# ՎԵՐԵՎՔ

ՀԵՆՐԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Յածում թողած վտակների
Ժապավեններն օձագալար,
Վրանները բլրակների
Եվ անտառը խիտ ու դալար,
Բարձրանում ենք մենք անհամբեր
Գագաթները ձերմակահեր:

Փոքրանում է հեռվում արդեն
Պատկերը մեր ծանոթ գյուղի,
Որ կորչում է հետզհետե
Շղարշի տակ մառախուղի:

Մենք քայլում ենք սարերն ի վեր՝
Դեպի գագաթ, դեպի եթեր:

Մեր ոտքի տակ ձյունն է փլչում,
Ու ճաքճքում սառույցն արծաթ,
Մեր դեմ քամին է մռնչում.
Բայց մենք համառ, մի կամք դարձած
Մագլցում ենք դարձյալ վերև,
Դեպի գագաթ, դեպի արև:

Ինչպես պայծառ երազի մեջ՝
Հեռավորն է դառնում մոտիկ,
Գագաթն արդեն ժպտում է մեզ
Վառ հրդեհով մայրամուտի:
Ելնում ենք մենք գագաթն ի վեր՝
Մեր աչքերում նորիզոններ:

Երբ երեկոն խաղաղ նայի
Աստղ-աչքերով ադամանդյա,
Որպես դրոշ հաղթանակի՝
Խարույկը մեր կբոցկլտա...
Ու կնախրեն սրտերը մեր
Սարերն ի վեր, աստղերն ի վեր:



Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ




ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1956 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ

# Մեր սարերը

Ս. ԽԱՐԱՋՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ



Կանգնած են շարքով սարերը Լոռվա
Որպես անվրդով, անխոս հսկաներ՝
Մթին անտառներ ուսերի վրա,
Կանաչ լանջերին աղբյուրներ անմեռ։
Ձմռան մոտերքին քնում են նրանք,
Մշուշ է իջնում անտառ ու ձորին,
Գարնանը նորից ծաղկում երփներանգ,
Ու ձայն են տալիս իրենց սարվորին։
Ծաղկում են, զուգվում ճամփա, արահետ,
Եվ արոտները թարմ ու բուրավետ
Վաղորդյան ցողով ժպտում են նորից։
Կյանքով են լցվում սարերն ամայի.
Կանաչի բույրով օդն է քաղցրանում,
Երբ ամեն կողմից մեր շեն գյուղերի
Հոտն ու նախիրն են այնտեղ բարձրանում։
Ուրախություն է պատում սարերին,
Լսվում է մայոց, աղմուկ ու բառաչ,
Երգում են հովիվն ու կթվորուհին՝
Ելնելով ամռան արևից առաջ։
Առատությունն է հոսում այնտեղից՝
Բերելով իր հետ խնդություն ու կյանք,
Ինչպես հոսում են աղբյուրները ջինջ,
Սարի ջրերը մեր սառնակոհակ։
Բայց հեշտ չէ այնպես գործը սարվորի.
Հեռու, մեկուսի, բնության ծոցում
Նրան նեղում է տարերքը վայրի,
Նրան անձրևը հաճախ հալածում.
Սարեր ու ձորեր թաղվում են միգում,
Ագահ գայլերը վրա են տալիս,
Շատ գիշերներ է նա մնում անքուն,
Եվ հենց իրեն չէ բարիքը գալիս։
Մթին անտառներ ուսերի վրա,
Կանաչ լանջերին աղբյուրներ անմեռ՝
Կանգնած են շարքով սարերը Լոռվա
Որպես կենսատու, բարի հսկաներ։




Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՈՐՈՆՈՒՄՆԵՐ

Արևը վաղուց թաքնվել էր անտառապատ սարերի ետևը։ Գյուղն աստիճանաբար սուզվում էր մթության մեջ։ Քիչ հետո խավարը ջնջեց ծառերի ու թփուտների կանաչը՝ թողնելով միայն նրանց հազիվ նշմարվող ուրվագծերը։ Գիշերային խաղաղ անդորրության մեջ շարունակ լսվում էր մոտակա ձորով հոսող գետի միօրինակ, ականջ թմրեցնող խշշոցը։ Մթության մեջ ուրվագծվել էր հին, կիսավեր վանքը, որը փետրաթափ ագռավի նման թառել էր ձորաբերանի ժայռոտ պռնգին։

Լուսինը դուրս եկավ։ Շրջապատը ողողվեց կաթնագույն լույսով։ Անտառամիջի բացատներից մեկով, փոքր ինչ կուչ եկած, անցնում էին երեք հոգի։ Նրանք երբեմն կանգնում, զննում էին շրջապատը, ապա նորից շարունակում իրենց ճանապարհը։ Առջևից գնացողը հանկարծ կանգ առավ, ականջ դրեց։ Ճանապարհի եզրի թփուտների միջից ինչ-որ շշուկներ լսվեցին։ Նրանք տարակուսած նայեցին միմյանց։

— Այս ի՞նչ ձայներ են,— շշնջաց մեկը,— չլինի՞ նա է...

— Դու էլ բան ասացիր, նա ինչպե՞ս կարող է խոսել,— պատասխանեց երկրորդը։

— Զարմանալու բան չկա, տղաներ, այդպիսիները երբեմն խոսում են իրենք իրենց... Իհարկե, չեն զգում, թե ինչ են խոսում, բայց խոսում են։

— Հեքիաթներ են, առասպելներ... մարդ էդպիսի փչոցների չի՛ հավատա,— ավելացրեց երրորդը՝ թերահավատորեն ուսերը վեր քաշելով։ Նա խոսքը դեռ չէր վերջացրել, երբ նորից շորացած տերևների խշշոց լսվեց։

— Ա՛յ, ա՛յ, մի այնտեղ նայեք, կարծես դիմացի կաղնու մոտով ստվեր անցավ. աղնիվ խոսք, անցավ։

— Ո՞ւր է, ոչինչ չի երևում...

— Աչքիդ է երևացել,— վրա տվին տղաները։

Ցոլակը լուռ կանգնել և վախեցած շուրջն էր դիտում։ «Գուցե թվաց ինձ»,— մտածում էր նա, ջանալով համոզվել, որ այդ ամենը սուտ է, որ իրոք տղաները ճիշտ են ասում՝ իր աչքին է երևացել։ «Բայց չէ՞ որ քիչ առաջ լսված շշուկները նրանք էլ լսեցին» եզրակացրեց մտքում նա։

Շուրջն առաջվա նման խաղաղ էր ու հանգիստ։ Միայն այդ պահին ինչ-որ տեղ հաչեցին շները, ու նորից լռություն տիրեց։ Տղաները շփոթված կանգնել ու չգիտեին ինչ անեն։

— Դե ի՞նչ ենք մեխի նման ցցվել. ավելի լավ է ետ դառնանք, հիմա երևի ստուգում են վրաները։ Ա՛յ, դրա համար մեզ մի լավ կքոթնեցնեն, ինչպես հարկն է,— ասաց տղաներից մեկը։

— Վահեն ճիշտ է ասում,— ավելի լավ է ետ դառնանք...

Տղաները որոշեցին այս ամենի մասին ոչ ոքի ոչինչ չասել ու լուռ ետ դարձան։

Նրանք ամբողջ ճանապարհին ոչ մի բառ չփոխանակեցին իրար հետ։ Անտառը համարյա ոտնատակ էին տվել, բայց ոչ իրենց ընկերոջն էին գտել, ոչ էլ նրա հետքը։ Հիմա նրանք ետ էին դառնում դեպի ճամբար տանող նեղ արահետով։ Գլուխները պտտվում էին, ոտքերը հոգնածությունից ծալվում։ Այդ պահին նրանցից յուրաքանչյուրը մի անասելի ցանկություն էր զգում՝ մեկնվել փափուկ անկողնու վրա և քնել...

Հեռվից երևաց ճամբարը։ Տեղ-տեղ կիսաբաց





վրաններում ծուլորեն առկայծում էին լապտերները։ Նրանց աղոտ ճառագայթները հազիվ լուսավորում էին մութ շրջապատը։

Գիշերային երեք շրջիկները մոտեցան վրաններին։

— Սպասեք, ի՞նչ եք առաջ քշում, չե՞ք տեսնում՝ մեր վրանում լույս է երևում,— ասաց Վահեն։

— Կորած ենք, տղերք, ստուգում են վրանները,— խզված ձայնով վրա տվեց շիկահեր Վաչիկը և, ըստ իր սովորության, վեր քաշեց շալվարը։

Նրանք դեռ երկար կսպասեին, եթե այդ պահին երրորդ ջոկատի տղաների վրանում լույսը չմարեր։ Այդ տեսնելով տղաները թեթևացած շունչ քաշեցին...

— Որպեսզի ոտնաձայներ չլսվեն, հանել կոշիկները և անաղմուկ ներս մտնել,— կարգադրեց Վահեն։

— Դե դու էլ ի՞նչ ես օյիններ սարքում, կեղտոտ ոտքերով անկողի՞ն պետք է մտնենք, ինչ է,— բողոքեց Վաչիկը։

Նրանց խոսակցությունն ընդհատվեց։ Այդ պահին բացվեց վրաններից մեկի մուտքը, և անսպասելի դուրս եկավ հերթապահ ջոկատավարը։ Տղաները փորձեցին թաքնվել, բայց արդեն ուշ էր։ Ջոկատավարը ձեռքի լապտերիկով լուսավորեց նրանց շփոթված դեմքերն ու մոտեցավ։

— Այս ժամին ի՞նչ գործ ունեք դրսում,— հարցրեց նա խստությամբ։

Շփոթված տղաները չիմանալով ինչ պատասխանել, լուռ նայեցին իրար։

## ԼՈՒՍՆՈՏԸ

Վերջերս Երրորդ ջոկատի տղաների վրանում տարօրինակ մի բան էր կատարվում։ Ամեն գիշեր, երբ կապույտ երկնքում դանդաղ լողում էր լուսինը, երբ ճամբարը թաղվում էր խորը լռության մեջ, տղաներից մեկն աննկատելիորեն դուրս էր սողում իր վերմակի տակից և բացելով մուտքը, անհետանում գիշերային խավարում։

Ո՞ւր էր գնում նա այդ ուշ ժամին...

Մի անգամ էլ, երբ տղաները վրանի առաստաղից կախված լապտերը վաղուց մարել ու քնել էին, նա իջավ մահճակալից։ Վրանի կիսաբաց մուտքից ներս էր թափանցել լուսնի աղոտ լույսը։ Դրսում գտնվող ծառերի ճյուղերը ստվերներ էին գցել վրանի մեջ։ Ստվերները երերում էին պատերի վրա և տարօրինակ ձևեր ընդունելով ձուլվում իրար։ Վրանի ներսում խորը լռություն էր։ Բոլորը քնած էին։ Տղան դեռ մի քայլ չէր արել, երբ անզգուշաբար դիպավ իր մահճակալի կողքին դրված փոքրիկ պահարանին։ Պահարանի վրայից ինչ-որ բան գլորվեց ընկավ գետին։ Այդ ձայնից քնածներից մեկն արթնացավ և նկատեց, թե ինչպես մի ստվեր դանդաղ դուրս սահեց վրանից։

Ցոլակը քիչ մնաց ճչար, բայց ձայնը խեղդվեց կոկորդում։ Նա վերմակը քաշեց երեսին և փորձեց քնել, բայց հանգիստ չտվող մտքերը կարկտի նման թմբկահարում էին նրա ուղեղը։ Քունը փախավ աչքերից։ Վախը սրտում՝ հրեց կողքի քնածին.

— Վահե՛, ա՛յ Վահե, վե՛ր կաց...

Քնած տղան մի քանի անգամ ինքնաբերաբար շարժեց ձեռքերը և աչքերը բացեց։

— Ի՞նչ է,— ծուլորեն քրթմնջաց նա։

— Նորից դուրս գնաց,— տագնապահար շշնջաց Ցոլակը։

— Ո՞վ...

— Պրոֆեսորը, էլ ով։ Երբ արթնացա, նա իջել էր մահճակալից և կույրի նման ձեռքերով խարխափում էր մթնում։ Աչքերը փակ էին։ Այդպես, իհարկե, միայն լուսնոտներն են լինում, իսկ դեմքն այնպես գունատ էր,— ասաց Ցոլակը մոռանալով, որ վրանում մութ էր, և նա ոչինչ տեսնել չէր կարող։

— Ասում ես աչքերը փակ էի՞ն,— կասկածով հարցրեց Վահեն։

— Բոլորովին փակ։

— Մի փչի։

— Իսկի էլ չեմ փչում։

— Ախր դու մի րոպե պատկերացրու. աչքերը փակ ինչպե՞ս կարող է քայլել. կդիպչի մի բանի ու... վայր կընկնի։

— Երբեք էլ չի դիպչի. նա լուսնոտ է։

Տղաների վիճաբանությունը աստիճանաբար բորբոքվեց։ Այդ պահին մահճակալներից մեկը ճռռաց և Վաչիկը արթնացավ քնից։

— Ինչ եք շարունակ պտպտում ու չեք թողնում մարդ քնի։

— Քնիր, եթե քեզ այդքան հաճելի է... Սրան տեսեք, մարդը աչքերը փակ շրջում է դրսում, իսկ սրա հեչ պետքն էլ չի,— փնթփնթաց Ցոլակը։

Վաչիկը, որ արդեն շրջվել էր և պատրաստվում էր քնել, Ցոլակի այս խոսքերը լսելով՝ վեր թռավ տեղից։— Դե, թողեք, է՛, տղաներ, ծիծաղո՞ւմ եք, ինչ է... Գուցե երազում եք տեսել։ Ախր մարդ աչքերը փակ ինչպե՞ս կքայլի։ Հեքիաթներ են...

— Ինքդ ես հեքիաթ,— վրա տվեց Ցոլակը,— լավ կանես քնես, թե չէ միևնույն է, դու ոչ մի բանի չես հավատում: Ա՛յ, տատս ասում է, որ լուսնոտները գիշերները դուրս են գալիս անկողիններից և աչքերը փակ շրջում: Նրանք կարող են քայլել կամուրջներով ու բարակ երկաթալարերի վրայով, թռչել բարձր ցանկապատերից, նույնիսկ հարթ պատերի վրայով, առանց դժվարության կարող են մագլցել ու բարձրանալ տանիքները: Հետո, տատս ասում է, որ լուսնոտները դուրս են գալիս միայն լուսնյակ գիշերներին:

— Իսկ եթե երկինքը ամպամած է,— լսվեց Վաչիկի ձայնը:

— Դե, պարզ է, ամպոտ գիշերներին դուրս չեն գալիս...

— Ճանապարհը կկորցնե՞ն, ինչ է: Այդպիսիների համար մեկ չի՞, լուսնյակ կա, թե ոչ, չէ՞ որ նրանց աչքերը փակ են,— հարցրեց Վահեն:

— Չէ, տղանե՛ր, ի՞նչ եք շարունակ հարցնում, հա հարցնում... Այդ բոլորը տատս է պատմել: Ա՛յ, մի անգամ նա պատմում էր, թե ինչպես իրենց գյուղում մի մարդ կես գիշերին քնած ժամանակ դուրս է եկել անկողնուց և վերցնելով գերանդին գնացել է արտը հնձելու. հնձելուց հետո վերադարձել է տուն ու նորից մտել անկողին: Առավոտյան, երբ գնացել է արտը, տեսել է ամբողջ ցորենը հնձած: Նա զարմացած բացականչել է. «Վա՜յ, էս ո՞վ է հնձել»:

— Հեքիաթներ են,— իր սովորության համաձայն կրկնեց Վաչիկը:

— Ի՞նչ ես դու էլ թութակի նման շարունակ կրկնում «Հեքիաթներ են»: Չես հավատում, եկ դուրս գանք, և ամեն ինչ քո աչքով տես,— բարկացավ Ցոլակը:

— Դուրս գանք,— միաբերան ասացին Վաչիկն ու Վահեն:

— Լավ, դուրս գանք,— ծոր տվեց Ցոլակը ձայնը երկարացնելով,— միայն թե, երբ հանդիպենք նրան, ձայն չտաք, թե չէ կարող է... դե, գիտեք ինչ, հանկարծ կարող է արթնանա, և հազար ու մի վատ բան պատահել նրա հետ:

— Հիմար հո չենք,— բացականչեցին տղաները և արագ ցած թռան մահճակալից:

Նրանք մթության մեջ խարխափելով, մի կերպ ճանկեցին իրենց շորերը և թարս ու շիտակ սկսեցին հագնվել: Մյուսներին քնած թողնելով, նրանք զգույշ դուրս եկան վրանից՝ իրենց ընկերոջը որոնելու:

Ահա թե որտեղից էին վերադառնում այդ ժամին երեք շրջիկները, երբ հերթապահ ջոկատավարը վրանի մուտքի մոտ կանգնեցրեց նրանց:

Այս ամենի մասին տղաներն, իհարկե, լռեցին, միայն Վահեն էր, որ կմկմաց և քիչ մնաց պատմեր բոլորը, բայց հիշելով իրենց որոշումը, նույնպես լռեց:

— Ուրեմն չեք ասում, թե որտեղից եք գալիս, լա՜վ... Հիմա գնացեք քնելու,— խստությամբ ասաց ջոկատավարը:



Տղաները գլխահակ վրան մտան: Լապտերը վառեցին: Եվ զարմանքով տեսան, որ «պրոֆեսորի» մահճակալը դատարկ չէր: Նա վերադարձել էր իր խորհրդավոր շրջագայությունից և այժմ մուշ-մուշ քնած էր:

— Ը՜հը՛, ասում էի, չէ՞, որ այդ բոլորը հեքիաթներ են, —կճատ քիթը վեր ցցելով խոսեց Վաչիկը:

— Նա հանգիստ խռմփացնում է իր անկողնում, իսկ մենք փնտրում էինք նրան,— ավելացրեց Վահեն:

— Դրա համար հարկավոր էր ստուգել, բայց մենք լապտերն էլ չվառեցինք:

*Այդ մենք էինք աչքներս փակ շրջում և ոչ թե նա,— փնթփնթաց Վաչիկը։*

*Մինչ տղաները տաք-տաք վիճաբանում էին, Ցոլակը լուռ հանեց շորերը և անկողին մտավ։*

## ՑՈԼԱԿԸ

*Զարմանալի բնավորություն ունի Ցոլակը։ Սիրում է շարունակ սարսափելի պատմություններ հորինել ու ոչ պակաս ցանկություն ունի լսել այդպիսիները ուրիշներից։ Երեկոները քնելուց առաջ, երբ տղաներից մեկն ու մեկը մի բան էր պատմում, Ցոլակը ձանձրույթից թթվեցնում էր դեմքն ու հոնքերը կիտելով ասում.*

*— Դե, դա ի՞նչ է որ, էդտեղ ոչ մի շշմեցնող բան չկա։ Ա՛յ ուրիշ է, երբ այնպիսի բան ես պատմում, որ լսողի մազերը փշաքաղվում են։*

*Եվ նա ընդհատելով պատմողին, անմիջապես սկսում էր իր երևակայության մեջ մեխված «շշմեցնող» պատմությունները, լսողների գլխի մազերը սարսափից ցցված տեսնելու դիտավորությամբ։*

*Պատմելիս նրա ձայնը դողում էր, իսկ երեսի գույնը... եթե այդ պահին վրանում մութ չլիներ, տղաները կտեսնեին, թե ինչպես էր Ցոլակի երեսը կավճի նման ճերմակել։ Ցոլակն իր պատմությունները սկսում էր միայն այն ժամանակ, երբ վրանում բոլորովին մութ էր լինում։ Իսկ երբ տղաները փորձում էին վառել լապտերը, Ցոլակը դժկամորեն մրթմրթում էր քթի տակ.*

*— Չէ, այդպես հնարավոր չի պատմել, ագնիվ խոսք, ամբողջ տպավորությունը կփչացնեք...*

*Եվ ահա վրանի խավարում, ծայր էր առնում Ցոլակի «շշմեցնող» պատմությունների անվերջանալի կծիկը։*

*Նա մերթ հարություն առած մեռելների մասին էր պատմում, մերթ էլ՝ գիշերվա խավարում թափառող անտեսանելի ոգիների և ուրվականների։ Ցոլակն այնքան էր ոգևորվում, որ երբեմն ինքն էլ սարսափում էր իր պատմածից և շշնջում էր խզված ձայնով.*

*— Հը՛, ինչպե՞ս էր, սարսափելի էր, չէ՞...*

*— Լսիր, դու որտեղի՞ց ես հավաքում քո այդ պատմությունները,— ծիծաղները զսպած հարցնում էին ընկերները։*

*— Տատս է պատմել,— հպարտությամբ պատասխանում էր նա։— Հետաքրքիր էր, չէ՞։ Մի տեսակ չփշաքաղվեցի՞ք, խոստովանեք, չփշաքաղվեցի՞ք։*

*Տղաներին պարզ էր արդեն, թե Ցոլակը որտեղից էր հավաքել սարսափելի պատմությունների այդ անվերջանալի պաշարը։ Զարմանալին այն էր, որ Ցոլակը որքան սիրում էր սարսափելի պատմություններ լսել կամ պատմել, կրկնակի անգամ վախկոտ էր և անհամարձակ։ Եվ վախը՝*



*այդ վտանգավոր հիվանդությունը, վաղուց խըլուրդի նման իր բույնն էր փորել նրա սրտում։ Բավական էր հետաքրքիր մի դեպք պատահեր, և ահա նրա բորբոքված երևակայությունը կսկսեր գործել, ստեղծելով նրա ուղեղում միանգամայն այլ տպավորություն։*

*Ահա թե մի անգամ ինչ պատահեց նրա հետ ճամբար գնալու սկզբի օրերին։*

*«Մեռյալ ժամը» նոր էր վերջացել։ Վրանում ոչ ոք չկար։ Ցոլակն էր միայն հանգիստ խռըմփացնում։ Նա դեռ երկար կմնար քնած, եթե նրա վրայից վերմակը չքաշեին։ Նա մտածում է, որ տղաները կլինեն, ուստի աչքերը փակ խնդրում է.*

*— Դե լավ, է՛, թողեք մի քիչ քնեմ, էլի...*

*Այդ ասելուց հետո նա շրջվում է և գլուխը ավելի խորը թաղում փափուկ բարձի մեջ, բայց վերմակը նորից են քաշում։*

*— Թողեք, էհ,— քնաթաթախ տրտնջում է Ցոլակը և աչքերը բացում... «Այ, քեզ բան։ Վրանում ոչ ոք չկա, բայց այս ո՞վ էր քաշում վերմակը», տագնապով մտածում է նա։*

*Վերմակը, որ մինչ այդ կիսով չափ ներքև էր կախվել, հանկարծ թռչում է նրա վրայից, մի քանի պտույտ է կատարում հատակի վրա և անմիջապես կծկվում իր մահճակալի տակ։ Ցոլակը*

սարսռում է։ Նա փորձում է բարձրացնել գետին ընկած վերմակը, բայց... ա՛յ քեզ հրա՜շք։ Մահճակալի տակ մտած վերմակը, որի ծայրը փոքր ինչ դուրս էր մնացել, հանկարծ սկսում է շարժվել, ասես կենդանի լիներ։ Սկզբում սողում է լուսամուտի մոտ, հետո մոտենում այն մահճակալին, որի վրա պառկած էր Ցոլակը։

Ցոլակին թվում է, որ այդ պահին մահճակալի ցանցը մի փոքր բարձրացավ։ Նա խայթվածի նման վեր է թռչում անկողնու վրայից և սեղմվում վրանի պատին։

Այդ պահին նրա գլխով սավառնում են տատի այն խոսքերը, թե ինչպես աներևույթ ոգիները երբեմն քնած մարդու վրայից աննկատելիորեն քաշում են վերմակը կամ գլխի տակից՝ բարձը, որ վախեցնելով «հազար ցավի տեր դարձնեն»։ Դրա համար հարկավոր է երեսով շրջվել ու «երեք անգամ խաչ քաշել պատի վրա»։

Սառը քրտինքը թրջում է նրա ճակատը։ Աչքը չհեռացնելով վերմակից, ետ-ետ է գնում։ Երեսով շրջվում է պատի կողմը ու շտապով կատարում այն ամենը, որոնք տատի ասելով, պետք է ոչընչացնեին ոգիների այդ անհասկանալի ցանկությունը։ Այդ միջոցին ինչ-որ փռթկոցներ են լսվում։ Մահճակալի տակ կծկված վերմակի տակից դուրս են ցցվում սկզբում Վահեի, իսկ հետո Վաչիկի շիկահեր գլուխները։

Ցոլակը տղաներին տեսնելով, ծիծաղելի ձևով ծռմռում է դեմքը, ժպտում, բայց դա այնպիսի ժպիտ է, որ պատահում է միայն ամոթի կամ սաստիկ վախի ժամանակ։

— Այդ ինչպե՞ս, ու... ուրեմն այդ դուք էիք, տղաներ, իսկ ես... իսկ ես կարծում էի...,— հազիվ կմկմում է Ցոլակը։

Իսկ թե ինչ էր կարծում նա, այդ արդեն պարզ էր տղաներին։

Եվ ահա այս ամբողջ պատմությունը բերանից-բերան տարածվում է ճամբարականների մեջ ու մի քանի օր հետո ճամբարի պատի թերթում գրվում այդ մասին։

Ճամբարականները չէին կարողանում իրենց ծիծաղը զսպել, երբ նայում էին հոդվածի տակ զետեղված ծաղրանկարին։ Կիսամերկ, գզգզված մազերով, երկու ձեռքով գլուխը բռնած, սարսափահար փախչում էր ինքը՝ Ցոլակը։ Ետևից գալարվելով սլանում էր նրա վերմակը։ Նկարի տակ խոշոր տառերով գրված էր. «Բռնեցե՛ք, փախավ Սաքոն խելագար...»։



# ԿԱԳԻՆԸ՝ ՓՆՏՐՈՒՄ Է ԽՈՇՈՐԱՑՈՒՅՑՆԵՐԸ

Գորշ երկինքն հետզհետե սկսեց բաց կապտավուն դառնալ։ Աստղերը մի վերջին անգամ ցոլցլացին և անհայտացան՝ ձուլվելով երկնքի կապույտին։ Ծառերի, թփուտների մուգ ստվերներն աստիճանաբար պարզվեցին ու կանաչեցին։ Լույսը բացվեց։ Գիշերային քնից, ասես երիտասարդացած, սկսեց արթնանալ զառամյալ անտառը։ Արևի տաք շողերից նոր ուժ ստանալով, դանդաղ վեր բարձրացան վայրի տանձենիների ու խնձորենիների մատղաշ, ցողաթաթախ ճյուղերը։ Այդ շարժումը միայն ճյուղերին թառած թռչուններն զգացին և հանկարծակի գալով, թափահարեցին թևիկներն ու թռան։ Խոնավ գետնից տաք գոլորշի բարձրացավ։ Ամբողջ անտառը կարծես սկսեց շնչել մի նոր կենսախինդ ուժով։

Բնության այդ զարթոնքից հետո լսվեց պիոներական շեփորի ձայնը, որն արձագանքելով մոտակա ձորում տարածվեց հեռո՜ւ, հեռու...

Արթնացավ ճամբարը։ Մեղվանոցի նման բզզաց ու աղմկեց։ Վրաններից դուրս թռան ճամբարականները։ Ոմանք սրբիչները մեջքներին կապած, ոմանք էլ օդում թափահարելով վազում էին մոտակա բացատը։

Երբ լիցքային վարժությունները վերջացան, ճամբարականներն արագ խռնվեցին գնացքի վագոնիկների նման իրար ետևից շարված լվացարանների մոտ։ Մի մասն էլ սլացավ ճամբարի մոտ գտնվող ձորակը։ Գետի ջուրն այնքան սառն էր, որ կարծես կտրում էր ածելու նման։ Բայց նրանք դրան կարևորություն չէին տալիս և լվացվում էին, հետն էլ աշխույժ կատակներ անում։

Այդ ժամանակ գետափին ընկած խոշոր քարերի վրայից ցատկոտելով, լվացվողներին էր մոտենում թխահեր մի տղա։ Բոլորն էլ ճանաչում էին շալվարի երկար փողքերը մինչև ծնկները քշտած, բոբիկ ոտքերով այդ տղային։ Չնայած նա ամառանոց էր եկել իր պապի հետ, բայց հաճախակի էր լինում ճամբարում, որը գյուղից այնքան հեռու չէր։

— Տղերք, ո՞ւր է Համոն,— հևասպառ հարցրեց տղան առանց շուրջը նայելու։

— Է՜յ, պրոֆեսո՛ր, քեզ են հարցնում,— ձայն տվեց Վահեն, իրենից քիչ հեռու լվացվող տղային։



Համոն շտապով լվաց երեսի սապնափրփուրը և մոտեցավ իրեն հարցնող տղային, որը կանգնել էր գետեզերքից քիչ հեռու, դժգոհ հայացքը մի կետի սևեռած։

— Հը՛, ի՞նչ կա։

Տղան անհանգիստ մի շարժում արեց. ցանկացավ ինչ-որ բան ասել, բայց լռեց։

— Լսի՛ր, ինչո՞ւ ես քացախի նման թթվել...

— Ե՞ս, ես իսկի էլ թթված չեմ,— վերջապես խոսեց տղան,— միայն թե... խնդրում եմ ետ վերադարձրու խոշորացույցները...

— Ի՞նչ, ի՞նչ... խոշորացույցնե՞րը, հո չե՞ս գժվել։

— Չէ, չեմ գժվել, բայց դու հասկացիր, պապիկս երեկվանից սկսել է փնտրել։ Էլ տեղ չթողեց, որ ման չեկավ։ Նա լուռ փնտրում է, իսկ ես անկողնում պառկած մտածում եմ. «Խեղճ պապիկ, այդպես փնտրելով դու երևի քո ամբողջ կյանքում չկարողանաս գտնել այն, ինչ կորցրել ես»։

— Եվ ի՞նչ, նա չկասկածե՞ց, որ դու ես վերցրել։

— Ասենք կասկածեց, բայց ուղղակի չասաց։ Եվ հետո կարծում ես հե՞շտ բան է նայել, թե ինչպե՞ս էր նա տնքտնքալով հանում գրասեղանի դարակները, հանքային քարերով լի արկղները և մեծ համբերությամբ փնտրում։ Դա բավական չէ, ինձ էլ ստիպեց օգնել իրեն։ Պատկերացրու, թե որքան ձանձրալի բան է, երբ քեզ ստիպում են փնտրել այն, ինչը քո ձեռքով է անհայտացել։ Հետո դա խաբեբայություն է. դրա համար էլ ես հրաժարվեցի, ասելով՝ անհույս բան է, պապիկ, չենք գտնի... Եվ ի՞նչ. նա շտկեց կռացած մեջքը և ակնոցների վերից խեթ-խեթ նայելով ինձ, ասաց. «Երիտասարդ, վերջերս մեր տանը տարօրինակ բաներ են կատարվում։ Իմ գրասեղանի վրայից կամաց-կամաց անհետանում են այն իրերը, որոնք այնքան անհրաժեշտ են ինձ։ Եվ դա ինձ բոլորովին դուր չի գալիս»։ Հենց այդպես էլ ասաց՝ բոլորովին դուր չի գալիս։ Խնդրում եմ ետ վերադարձնես, թե չէ այլևս պապիս աչքին չեմ կարող երևալ, հասկանո՞ւմ ես, չեմ կարող։

Տղայի այս պատմությունը ալեկոծեց Համոյին. նա խոժոռեց դեմքը և հուսահատությունից սկսեց անհանգիստ շարժումներ անել տեղում, շարունակ կրկնելով։

— Ասում ես՝ փնտրում էր, հա՞... Ուրեմն որոշել ես ետ տանել խոշորացույցները, հա՞։

— Ախր դու հասկացիր, ես երբեք էլ չեմ ուզում, բայց դե ի՞նչ կարող եմ անել։

— «Ինչ կարող եմ անել, ինչ կարող եմ անել», իսկ ամեն ինչ տապալել կարո՞ղ ես, ասա՛, կարո՞ղ ես,— բարկացած կրկնում է Համոն։

Անսովոր լռություն տիրեց։ «Ի՞նչ անել, ինչ հնարքով դուրս գալ այս վիճակից»,— մտածում էր յուրաքանչյուրը։ Հանկարծ հույսի մի շող լուսավորեց Համոյի մռայլ դեմքը։

— Լսի՛ր, իսկ ի՞նչ կլինի, եթե պապիկիդ պատմենք ամեն ինչ։

— Գժվե՞լ ես, ինչ է։ Եթե նա իմանա, որ խոշորացույցները մենք ենք տարել, այնպես կբարկանա որ...

— Չէ, ավելի լավ է պատմենք, բացատրենք բոլորը, դե նա էլ գիտնական մարդ է, կհասկանա ու կների. չէ՞ որ մենք էլ այդ ամենը գիտության համար ենք արել։

— Ա՛յ, դա ուրիշ բա՜ն է։ Ես համաձայն եմ,— ուրախացավ տղան։

Նրանք որոշեցին այդ բանակցությունները սկսել հենց նույն օրը, թե չէ ուշ կլիներ։

Մինչ տղաները զբաղված էին իրենց որոշումներով, հեռվից լսվեց շեփորի ձայնը, որն ազդարարում էր ճամբարականներին՝ պատրաստվել դրոշի բարձրացման։ Գետափին գտնվող տղաներն ու աղջիկները շտապ հավաքեցին իրենց իրերը ու սլացան ձորից դեպի վեր ձգվող նեղ, քարքարոտ ճանապարհով։ Ջրում աղմուկը դադարեց։ Գետափին մնացին միայն երկու հոգի։

Տղան վեր քաշեց, առանց այն էլ քչտած փողկերով շալվարը և սուլելով ճանապարհ ընկավ դեպի գյուղ։ Նա բավական տարածություն էր անցել, երբ ինչ-որ բան հիշելով կանգ առավ ու ձայն տվեց ձորաբերանի ճանապարհով վեր բարձրացող ընկերոջը։

— Լսիր, Համո, բայց տե՛ս, հա՜, չմոռանաս. կգաս անպայման, իսկ մյուս կողմից լսվեց ճամբար շտապող տղաներից մեկի ձայնը.

— Է՜յ, պրոֆեսո՛ր, շտապի՛ր, ուշանում ես...



## «ՊՐՈՖԵՍՈՐԸ»

Այս պատվավոր կոչումը Համոն ստացավ այն ժամանակ, երբ ինչ-որ տեղից գտած մի քոսոտ շան վրա փորձարկած իր նոր դեղորայքը «փայլուն արդյունք» տվեց։

Այդ պատահեց այսպես։

Նա ճամբար գալու առաջին իսկ օրից սկսեց տարբեր տեսակի բույսերի կոլեկցիաներ հավաքել։ Նրա ընկերները սկզբում կարծում էին, թե այդ ամենը բուսաբանական խմբակին ներկայացնելու համար է, բայց հետո պարզվեց, որ բոլորովին էլ այդպես չէ։

Համոն իր մահճակալի տակ լցրել էր հեղուկներով լի տարբեր սրվակներ, պահածոյի դատարկ տուփեր և վերջապես ծաղիկների ու տերևների զանազան կույտեր։ Տղաներն այդ ամենը տեսնելով շարունակ տրտնջում էին.

— Դու ամբողջ վրանը աղբանոց ես դարձրել։ Մենքստիպված կլինենք դուրս թափել բոլորը։

— Խնդրում եմ, տղե՛րք,— ձեռք ու ոտք ընկած թախանձում էր նա,— դրանք շատ կարևոր բանի համար են, խնդրում եմ դուրս չթափեք, ազնիվ խոսք, կարևոր բանի համար են, դուք այդ հետո կիմանաք։

Չնայած այդ պատճառաբանություններին, այնուամենայնիվ տղաները անդրդվելի մնացին։ Մի օր էլ նրանք դուրս շպրտեցին Համոյի ամբողջ «հարստությունը», որը նրա ասելով կարևոր նշանակություն պետք է ունենար ողջ մարդկության կյանքում։ Այդ դեպքից անմիջապես հետո նա իր խորհրդավոր «լաբորատորիան» տեղափոխեց նոր ծանոթացած մի տղայի մոտ, որը իր պապի հետ վերջերս էր ամառանոց եկել։

Ընկերների այն հարցին, թե ինչի՞ն էր հարկավոր թոշնած ծաղիկների ու տերևների կույտերը, կամ թե ինչո՞ւ էր իր հետ քաղաքից այդքան շատ դեղի դատարկ սրվակներ բերել, վիրավորված Համոն պատասխանում էր լռությամբ։

Վերջապես մի օր էլ ամեն ինչ պարզվեց։

Համոն ինչ-որ տեղից իր ծանոթ տղայի հետ ճամբար քարշ տվեց թափառական մի շուն, որը հազիվհազ շարժում էր չորացած ոտքերը։ Այնքան



նիհար շուն էր, որ թվում էր՝ ուր որ է վայր կընկնի ու կփչի շունչը։ Համոն ջոկատի տղաներին ու աղջիկներին ցույց տալով շանը, բոլորի ներկայությամբ հանդիսավոր ձևով բաց է անում իր նվիրական գաղտնիքը։

Պարզվում է, որ նա ամբողջ ժամանակ իր ուղեղը պարուրել է այն պատրանքով, որ ինքը վաղ թե ուշ մի այնպիսի դեղ կհայտնագործի, որը կանմահացնի նրա անունը։ Նրա ասելով ամեն ինչ արված էր, մնում էր միայն փորձարկել այդ «դեղը»։

— Այո, այո, մի ծիծաղեք, միշտ էլ այդպես է։ Գիտնականները, երբ նոր դեղ են հայտնագործում, սկզբում փորձում են կենդանիների վրա,— համոզում էր Համոն։

Լսողները փորները բռնում էին։

— Սրան տեսեք, մարդ ծիծաղից կպայթի։ Ախր, հասկացի՛ր, գիտնականներն իրենց ամբողջ կյանքում սովորում են, կարդում, ուսումնասիրում, իսկ դու գիտական մի բրոշյուր անգամ չես թերթել,— համոզում էր Վահեն։

Արդյո՞ք ճիշտ էր ասում նա։ Չէ՞ որ Համոն իր հետ մի ամբողջ ճամպրուկ գիտական հաստափոր գրքեր էր բերել։ Նա ամեն անգամ ճամպրուկից հանում էր այդ գրքերը, շուռումուռ էր տալիս ձեռքում կամ մեծ համբերությամբ թերթում էջերը։ Ճիշտ է, նա կարդացածից ոչ մի բան չէր հասկանում, բայց զգում էր, որ դրանք

*սովորական գրքեր չեն, որ այդպիսի գրքերը իրենից շատ ու շատ խելոք մարդիկ են կարդում։ Եվ այդ զգացումն էլ բավական էր, որպեսզի շոյվեր Համոյի հպարտությունը։*

*— Գլխիցդ հանիր այդ մտքերը։ Միևնույն է, ոչինչ դուրս չի գա,— համոզում էին նրա ընկերները։*

*Բայց մինչև հոգու խորքը վիրավորված Համոն ոչինչ չի պատասխանում, հեռանում է՝ ձգելով շան կապից։*

*Մի քանի օր հետո ճամբարում լուր է տարածվում այն մասին, որ Համոյի գյուտը տվել է իր «փայլուն արդյունքը»։ Հիվանդոտ շունը տարբեր բույսերից ստացած հեղուկների ազդեցության տակ փչել է շունչը, տանելով իր հետ Համոյի հույսերն ու երազանքները։*

*Այդ տխուր դեպքից հետո նրա «դեղագործական լաբորատորիան», իհարկե, դադարեց գոյություն ունենալուց, բայց ճամբարականները հիշելով այդ ամենը, շարունակ կրկնում էին.*

*— Չէ, ընկերնե՛ր, ինչ ուզում եք ասեք, այնուամենայնիվ «պրոֆեսոր» Համոն կհայտնագործի իր անմահական դեղը։*

*Այդ օրվանից էլ բոլորը նրան «պրոֆեսոր» էին կանչում։*

*(Շարունակելի)*



# ԲՆՈՒԹՅԱՆ ԾՈՑՈՒՄ

*Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Կանաչ դաշտեր, թավ անտառ,
Եվ առվակներ կարկաչուն,
Դուք կանչում եք անդադար,
Կարոտով եք դուք կանչում:
Եվ թմբուկով ու երգով,
Դրոշներով հրավառ
Նորից գիրկն ենք գալիս քո,
Կանաչ ու զով մեր ճամբար:
Նորից գիրկն ենք գալիս քո,
Ընդունում ես դու մոր պես,
Քո սրտաբաց երկնքով,
Ծաղիկներով քո պես-պես:

Երբ բացվում է քո պայծառ
Առավոտը զով ու ջինջ,
Համերգում են քաղցրաձայն
Թռչունները քո երգիչ.
Իսկ երեկոն աստղերով
Հեքիաթներ է մեզ ասում,
Ծաղկունքի մեջ ճոզեբով
Մենք պառկում ենք, երազում:
Ամառն ուժ է տալիս մեզ,
Մայր բնություն, քո ծոցում,
Որ աշնանը գարնան պես
Կայտառ լինենք դպրոցում:




Ռ. ՂԱՍԱԲՅԱՆ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Մի անգամ ճամբարում ավագ ջոկատավարը կանչեց Բաբկենին ու ասաց.

— Լսիր, Բաբկե՛ն, մինչև մոտակա գյուղը որքա՞ն կլինի։

—Հինգ կիլոմետր։

— Իսկ ճանապարհը գիտե՞ս։

— Իհարկե, մի քանի օր առաջ գնացել էինք կոլտնտեսությանն օգնելու, առաջ էլ եմ եղել այդ գյուղում, անցյալ տարի...

— Լավ։ Հիմա հարկավոր է շտապ գնալ գյուղ և առաջին ջոկատին ասել, որ վերադառնա ճամբար, այսօր հյուրեր են գալու և հանդիպում է լինելու նրանց հետ, հասկացա՞ր։

— Հասկացա։

— Դե, քեզ տեսնեմ։

Եվ երբ Բաբկենը շրջվեց ու ցանկանում էր հեռանալ, ավագ ջոկատավարը նրան նորից հետ կանչեց ու ասաց.

— Բաբկե՛ն, դու կգնաս Սուրենի հետ։— Եվ խորամանկորեն նայեց Բաբկենին, կարծես ցանկանալով իմանալ, թե ինչ տպավորություն կթողնի նրա վրա իր ասածը։

— Հրանտի հետ գնամ, թե չէ Սուրենի հետ վա՛ղն էլ տեղ չեմ հասնի. գետից անցնել չի կարողանա, վախենում է սառը ջրից, հետո դանդաղկոտ է։

— Իսկ դու նրան արագաշարժություն սովորեցրու, օգնիր, որ գետն անցնի։

Բաբկենը թեև դժկամությամբ, բայց և այնպես համաձայնվեց, ու քիչ հետո ավագ ջոկատավարն ու ճամբարի պետը տեսան, թե ինչպես Բաբկենն ու Սուրենը թեքվեցին ճանապարհից ու մտան անտառը։

Դեռ նոր էին մտել անտառ, երբ ինչ-որ ձայներ լսվեցին։

— Երևի արջ է,— մտածեց Սուրենը, բայց չհամարձակվեց որևէ բան ասել Բաբկենին։

— Բաբկե՛ն, մի քիչ կամաց քայլիր, չեմ հասնում,— ասաց Սուրենը,— ձեռքերս ու ոտքերս ճանկռոտվեցին։

— Իսկ դու ուշադրություն մի դարձրու դրանց վրա. «ճանկռոտվեցի՜ն», հեգնեց նրան Բաբկենն ու շարունակեց ճանապարհը։

— Գուցե մի քիչ հանգստանայինք,— առաջարկեց Սուրենը։

— Հանգստանա՜նք,— այս անգամ զայրացած վրա բերեց Բաբկենը,— դեռ մի կիլոմետր ենք անցել։

Սուրենին այլևս ոչինչ չէր մնում ասելու։ Նա հետևեց Բաբկենին, որն արդեն անտառից դուրս գալով, մոտեցել էր գետին ու կոշիկներն էր հանում։



— Ի՞նչ ես կանգնել մոլորվածի նման, հանիր կոշիկներդ,— հրամայական տոնով ասաց Բարկենը։

— Օ՜յ, այսօր հակառակի պես կարծես գետը վարարել է...

— Աչքիդ է երևում,— պատասխանեց Բարկենն ու մի պահ լռելուց հետո շարունակեց,— գիտե՞ս ինչ, Սուրե՛ն, եթե գալու ես, արի, թե չէ, հետ գնա։— Այս ասելով Բարկենը մտավ գետն ու անցավ հակառակ ափը։

Սուրենը մտածեց վերադառնալ, բայց անտառում լսված ձայները նորից միտքն ընկան ու քթի տակ փնթփնթալով մտավ գետը։

— Օ՜յ, ինչ սառն է ջուրը,— ու նա վախվխելով շարժվեց առաջ։ Նրա ոտքերի տակ էլ՝ կարծես դիտմամբ, սահուն, կլոր քարեր էին ընկնում ու դժվարացնում անցումը։

Մի կերպ նա հասավ մյուս ափը։

— Չէ, լավ անցար գետը, Սուրե՛ն, ուղղակի հիանալի։

— Էհ, ծաղրում ես, շորերս ջուր դարձան, հազիվ անցա, գետի հատակի քարերն էլ՝ կարծես դիտմամբ, կլոր էին, մարդ ոտք չէր կարողանում դրանց վրա դնել։

Մինչ այդ նրանք հասան բավականին լայն ու խոր մի առվի։

Սուրենը գլուխը քորեց ու նայեց ընկերոջը։

— Հը՛, էլի՞ մոլորվեցիր. Թռի՛ր,

— Իսկ դու կարո՞ղ ես թռչել,— հարցրեց Սուրենը։

— Կարող եմ, իհարկե, ի՞նչ կա որ, երկու մետր էլ չկա, իսկ ես չորս էլ կարող եմ թռչել։

— Զո՞րս... երկարացրեց Սուրենը,— ասելը հեշտ է, դե որ այդպես է, փորձիր։

Բարկենը առվից մի փոքր հեռանալով, վազեց ու հեշտությամբ թռավ մյուս ափը։



— Դե, դու էլ փորձիր։

— Էհ, ինչ ուզում է թող լինի,— մտածեց Սուրենն ու ետ-ետ գնաց։ Նա վազեց, բայց հենց առվի ափին կանգ առավ։

— Չէ, դժվար է, էդ իմ բանը չի։

— Վախկո՛տ։

— Ո՞վ է վախկոտը, ե՞ս, դե հիմա կտեսնենք, ով է վախկոտը։

Նորից Սուրենը ետ-ետ գնաց, վազեց ու... թռավ։ Բարկենը բռնեց նրա ձեռքերից, վեր բարձրացրեց ու ծիծաղելով ասաց.

— Թռչելու ժամանակ փոխանակ կծկվելու, փռվում ես ամբողջ մարմնով։ Լավ է, որ ջուրը չընկար։

Նրանք շարունակեցին գնալ։ Հասնելով գյուղամիջյան ճանապարհին, Բարկենն սկսեց դիտել ցորենի հասուն արտերում աշխատող մարդկանց։ Սկսվել էր բերքահավաքը։

Ճամբարի պիոներները որոշել էին օգնել կոլտնտեսությանը։ Այդ օրը առաջին ջոկատի հերթն էր։

— Չեն երևում,— ասաց Բարկենը,— տեսնես ո՞րտեղ են մերոնք։

— Դե որ չեն երևում, հետ դառնանք։

— Գիտե՞ս ինչ, Սուրե՛ն, ա՛յ, տեսնո՞ւմ ես մոտակա ծառերը, դու բարձրացիր դրանցից մեկի վրա և տես, թե որևէ տեղ չե՞ն երևում պիոներները, իսկ ես կվազեմ գյուղ և կիմանամ, թե որտեղ կարող են լինել նրանք։

— Դե որ կարող ես, դու բարձրացիր։

— Ի՞նչ է, վախենո՞ւմ ես։

— Դե, ի՞նչ ես անընդհատ վիրավորում ինձ, ո՞վ է վախենում։

— Դե, եթե դժվար չէ, բարձրացիր, իսկ ես գնամ գյուղ ու վերադառնամ։

Երբ Բարկենը հեռացավ գյուղ տանող ճանապարհով, իր չորս կողմը նայելուց հետո Սուրենը փորձեց բարձրանալ ծառը։ Նա փորձեց մեկ անգամ, երկու անգամ, չկարողացավ։ Նորից փորձեց։ Նախ թքեց ափերի մեջ, ապա մի քիչ հող վերցրեց բուռը և, ամուր փաթաթվելով ծառի բնին, սկսեց դանդաղ վեր մագլցել։

Ինքն իրեն քաջալերելով նա մի կերպ հասավ ծառի ամենաներքևի ճյուղին և կախվեց նրանից։ Նա ուզեց ավելի վեր բարձրանալ։ Հիմա արդեն այնքան էլ դժվար չէր, ճյուղերն իրար մոտիկ էին, և նա շուտով հասավ համարյա ծառի կատարը։ Նա դիտեց իր չորս կողմը։ Ոչ մի տեղ պիոներներ չէին երևում։ «Չէ, մերոնք երևի այն

սարի մոտ կլինեն» մտածեց նա։ Բայց հանկարծ նկատեց գյուղից դեպի իրեն եկող երեք հոգու։

Ի՞նչ իմանար Սուրենը, որ նրանք հենց իրեն էլ փնտրում էին։ Երբ նրանք մոտեցան ծառին, որի վրա գտնվում էր Սուրենը, նրանցից մեկը ձայն տվեց.

— Դու Սուրե՞նն ես։

— Այո, Սուրենն եմ,— ծառի վրայից պատասխանեց նա,— իսկ դուք որտեղի՞ց գիտեք իմ անունը։

— Քո ընկերոջը հանդիպեցինք գյուղում, նա ասաց, որ դու ցույց կտաս ճամբարի ճանապարհը,— ասաց մյուսը, որ լայնեզր գլխարկ էր դրել։

Կասկած չկար, որ նրանք հենց այն հյուրերն են, որոնց մասին ավագ ջոկատավարը ասում էր, բայց ինչպե՞ս իջնել։ Ինչքան էլ բարձր է ծառը։

Եթե նայող չլիներ՝ կփորձեր իջնել, թեկուզ և ընկներ, բայց հիմա, հյուրերի մոտ... ամոթ էր։ Հետո, ի՞նչ կմտածեին նրանք։ Նա փորձեց ձախ ոտքը դնել ներքևի ճյուղին, սակայն քիչ մնաց ընկներ։

— Զգույշ, կընկնես, փոքրի՛կ,— ներքևից ասացին հյուրերը։

«Երևի Բաբկենն ամեն բան սրանց պատմել է», մտածեց Սուրենը, և որպեսզի ցրեր հյուրերի կարծիքը, մի վճռական շարժումով իջավ ներքևի ճյուղին, ապա երկրորդին, երրորդին և ծառի բնից քիչ սահելով՝ թռավ գետնին։ Ճիշտ է, թեր ճանկռոտվեց, բայց այդ մասին ոչ ոք չիմացավ։

— Ապրես, ինչ ճարպիկ ես,— ասաց լայնեզր գլխարկով մարդը։

Նա ուզեց անվախ ցույց տալ և ասաց.

— Մեր ճամբարը մոտ է, հինգ կիլոմետր էլ չկա, ես ձեզ կուղեկցեմ։



Երբ հասան առվին, Սուրենը մի վայրկյան կանգ առավ, նայեց հյուրերին, հյուրերն էլ նրան, և Սուրենին թվաց, թե նրանք զարմացան, որ Սուրենը կանգ առավ։

— Մի քիչ այն կողմ կամուրջ կա, եթե ուզում եք, այնտեղից անցնենք,— ասաց նա։

— Դե, դատարկ բան է այս առուն,— պատասխանեց հյուրերից մեկը,— իսկ դու կարո՞ղ ես անցնել։

— Ե՞ս... իհարկե։

Բայց նա ինքն էլ վախեցավ իր ասածից։ Իսկ եթե ընկնի ջո՞ւրը։ Ա՛յ թե օյին սարքեց Բաբկենը։ Իհարկե, դիտմամբ է այդպես արել, որ իր վրա ծիծաղեն։ Ինչ ուզում է թող լինի, պետք է թռչել։ Եվ թռավ։

Մնացած ճանապարհն արդեն դժվար չէր անցնել։

Այժմ գետի ջուրն այնքան էլ սառը չթվաց, և ոչ էլ հատակի քարերն էին կարծես այնքան կլոր։ Իսկ անտառից անցնելն արդեն խաղ ու պար էր թվում, այնպես որ, Սուրենը չըզգաց, թե ինչպես հասան ճամբար։

Քիչ հետո վերադարձան նաև Բաբկենն ու առաջին ջոկատի պիոներները։

Երեկոյան խարույկի ժամանակ պարզվեց, որ հյուրերը սպորտի վարպետներ են։ Նրանք շատ հետաքրքիր բաներ պատմեցին այն մասին, թե ինչպես կարելի է դառնալ սպորտսմեն։

Բայց դրան հասնելու համար հարկավոր է ամեն օր մարզվել, չվախենալ դժվարություններից։

Բոլորը լսում էին կլանված, իսկ Սուրենը լսում ու մտածում էր, թե ինչու մինչև հիմա ինքը չի հանձնել «Եղիր պատրաստ աշխատանքի և պաշտպանության» կրծքանշանի նորմաները։ Մա-

գըլցնելը դժվար չէ, թռիչք երկարությամբ, որ լավ վարժվի՝ կարող է հանձնել, իսկ մյուս ձևերից. դե, մյուս ձևերից էլ կօգնեն ընկերները՝ Բաբկենը, Հրանտը, բոլորը։

Եվ Սուրենը այդ օրվանից որոշեց պարապել սպորտով։

# ԴԵՊՔ ԱՐՇԱՎԻ ԺԱՄԱՆԱԿ

(Փոխադրություն Ե. Կորոլևայից) Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

**Փոքրիկ տեսարան ճամբարի կյանքից**

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

| | |
|---|---|
| ՍՄԲԱՏ | ԳՈՀԱՐ |
| ՑՈԼԱԿ | ԴԱՍՏԻԱՐԱԿ |
| ԱՐՄԻԿ | ՊԻՈՆԵՐՆԵՐ |

Մարզադաշտին անտառում: Որոշ ժամանակ բեմը դատարկ է, ապա երևում են Սմբատը և Ցոլակը: Երկուսն էլ մեջքի պայուսակներով են: Սմբատն ունի դաշտային հեռադիտակ և ձեռքի ժամացույց, որոնց նա հաճախ է նայում: Տղաները շարունակում են սկսած խոսակցությունը:

ՍՄԲԱՏ.— *Իմ տասնմեկ մետրանոց հարվածը իսկ և իսկ գոլ է։ Տղանե՛ր, ինձ թողրե՜ք։ Եթե ասեն, դու չես... Նույնիսկ տնային կառավարիչն է հավանություն տվել՝ մրցանակն անձամբ ինձ հանձնել։* (Նայում է շուրջը, դիտում հեռադիտակով): *Իսկ նրանք չեն երևում... Դե եկ, նստենք։*

*Նստում է կոճղի վրա, նրան հետևում է Ցոլակը։*

ՑՈԼԱԿ.— *Իսկ դու էլ ուրիշ ի՞նչ սպորտով ես պարապում։*

ՍՄԲԱՏ.— *Դրա համար ժամանակ կա։ Ես երեք ֆուտբոլային թիմերում եմ* (ծալում է մատները). *բակային՝ մեկ, փողոցային՝ երկու, «Սպարտակ» ստադիոն եմ գնում՝ երեք։ Այնտեղ վարպետները մարզվում են։ Սկզբում մենք տղաներով նրանց գնդակ ենք տալիս, իսկ երբ խաղը պրծնում են, չենք շփոթվում, միանգամից դեպի դա՜շտ... Եվ վազո՜ւմ ենք, վազում անընդհատ։* (Ոչ մեծ դադարից հետո, բազմանշանակ) *Եվ դեռ ես մարզչական աշխատանքով էլ եմ զբաղված։ Իմ փորձն եմ հաղորդում։*

ՑՈԼԱԿ.— *Դո՞ւ։*

ՍՄԲԱՏ.— *Փոքրիկներին բակում մարզում եմ։*

ՑՈԼԱԿ.— (Հանդիսավոր) *Դու, պարզապես, ոնց որ իսկական սպորտի վարպետ ես։ Ես մի գրքույկում կարդացել եմ մեր նշանավոր ֆուտբոլիստների մասին։ Նրանք նույնպես փորձը հաղորդում են, նրանք, գիտե՞ս, սպորտի բոլոր ձևերով են զբաղվում. վազում են, թռչում, հրաշալի լողում, իսկ շատերը նույնիսկ թենիս են խաղում...*

ՍՄԲԱՏ.— (Ուսերը թոթվում է). *Ես անձամբ դեռ վարպետ չեմ։* (Հեգնական ձևով) *վազե՜լ, լողա՜լ, թենիս խաղա՜լ, չէ մի... իսկ ե՞րբ։ մի՞թե ժամանակ ունե՜մ։ Մի ասա՝ երեք թիմ։*

ՑՈԼԱԿ.— (Մտահոգված) *Ես հասկանում եմ, որ ժամանակ չունես։ Լավ է, որ «ԵՊԱՊ»-ի կրծքանշանի նորմաները հանձնելու համար դու ժամանակ գտար... Ապրե՛ս։*

ՍՄԲԱՏ.— (Ձեռքը թափահարելով) *Իսկ ի՞նչ կար հանձնելու որ... Դատարկ բան է։*

ՑՈԼԱԿ.— *Դու կարող ես։ Իսկ ես այնքան երկար եմ մարզվել։ Մագլցելը դեռ չի հաջողվել։ Իսկ ինչո՞ւ դու կրծքանշան չես կպցրել։*

ՍՄԲԱՏ.— (Քիչ ճապաղելով) *Ես չեմ վերցրել հետս. մոռացել եմ տանը։* (Դադար): *Մի՞թե բանը կրծքանշանն է։ Ա՛յ քեզ բա՜ն։ Գնում է մեզ հետ մի կրծքանշանակիր աղջիկ, իսկ ի՞նչ օգուտ։ Քարշ է գալիս ընկեր Գոհարի հետևից... Տե՜ս, թե ումը գտան ուղեցույց տալու մեզ՝ ուսուցչուհո՜ւն։ Ա՜յ, եթե սպորտսմեն լիներ...*

ՑՈԼԱԿ.— *Դե՛, Սմբատ, եթե ընկեր Գոհարը ուզեր, վաղուց կհասներ ինձ ու քեզ։ Ընդամենը*



մի քանի օր է, ինչ ճամբարում ես, դեռ չգիտես նրան։ Նա սպորտսմենուհի է։

ՍՄԲԱՏ.— (Անվստահ) Սպորտսմենուհի՞։

ՑՈԼԱԿ.— Անցյալ տարի մեր ճամբարը ուրիշ տեղում էր՝ գետի վրա։ Նա բոլորին լողալ սովորեցրեց։ Ցավալի է, որ այս ամառ տեղ չկա. դու տեսնեիր, թե Արմիկը ո՜նց է այժմ լողանում։ Ընկեր Գոհարը նույնիսկ սկսեց մեզ բրաս և կրոլ ձևերը ցույց տալ։ Իսկ դու կրոլ ձևով լող տալ կարո՞ղ ես։ (Երևում են ընկեր Գոհարը և Արմիկը)։

ՍՄԲԱՏ.— Ես անձամբ... (Նկատում է ընկեր Գոհարին ու Արմիկին և դիտմամբ բարձրաձայն խոսում, որ հատկապես նրանք լսեն)։ Ես և՛ կրոլ, և՛ բրաս ձևերով կարող եմ լողալ, և՛ նույնիսկ այդ... ինչպե՞ս է այդ...

ԳՈՀԱՐ.— (Սմբատին) Հավանաբար սպորտային դպրոցո՞ւմ ես պարապել։ (Խիստ) Իսկ տղաները մեզանից ինչու՞ տեղը փախան։

ԱՐՄԻԿ.— (Իր սովորական ձևով արագ խոսում է)։ Մենք ձեզ կանչեցինք, կանչեցինք, կանչեցի՜նք, իսկ դուք ոնց որ հրդեհի կողմը վազողներ, կարծես չեք լսում, թռչում եք ու թռչում։

ԳՈՀԱՐ.— Մենք պայմանավորվեցինք. ժամում քայլել հինգ կիլոմետրից ոչ ավելի։

ՑՈԼԱԿ.— Մենք խոսում էինք և չնկատեցինք։

ՍՄԲԱՏ.— Ես անձամբ այդպես դանդաղ չեմ կարող քայլել։

ԱՐՄԻԿ.— Դու «անձամբ» հավանաբար, արշավի առաջին անգամ ես գնում։ Կտեսնենք, թե վերադարձի ժամանակ ինչ կասես։

ԳՈՀԱՐ.— Մի մոռացեք. մեր արշավը հետախուզական է, մենք մարշրուտ ենք բացում, ոչ թե կրոսի մասնակցում։ (Նայում է շուրջը) Դադարի համար հարմար տեղ է. և՛ աղբյուրն է մոտիկ, և՛ չոր խռիվն է շատ։

ԱՐՄԻԿ.— Բացատը հրաշալի է։

ՑՈԼԱԿ.— Եվ քամուց անտառով պաշտպանված է։

ԱՐՄԻԿ.— Ստվերոտ էլ է։

ԳՈՀԱՐ.— Այո՛, բարեկամներս, դուք առաջ եք գնացել։ Իսկ ձեզ մոտ քարտեզ կա՞։ (Սմբատին) Քարտեզը տուր, նայենք, թե արդյոք ճի՞շտ ենք մենք գնում։
(Սմբատը հանում է քարտեզը, տալիս ընկեր Գոհարին։ Վերջինս նստում է կոճղի վրա)։

ԱՐՄԻԿ.— (Հետաքրքրությամբ) Ո՞րտեղ ենք մենք այժմ գտնվում։

ԳՈՀԱՐ.— Ահա մեր ճամբարը... Ահա Ծաղկաշեն գյուղը, մենք անցանք այդ գյուղը։ Իսկ ա՛յ, տեսնո՞ւմ եք անտառը։ Այստեղից մենք թեքվեցինք։

ԱՐՄԻԿ.— Եվ դուրս եկանք անցնող ճանապարհը։

ԳՈՀԱՐ.— (Ժպտալով) Այստեղ մեզանից դուք հեռացաք։

ՑՈԼԱԿ.— Ընդհանրապես ճիշտ ենք գնում։

ԳՈՀԱՐ.— Այո մինչև «Հաղթանակ» կոլտնտեսությունը բոլորովին էլ հեռու չէ։ Կանցնենք այս թփուտը և դուրս կգանք. տեսնո՞ւմ եք, ոլորմոլոր գծով ցույց տրված։

ՑՈԼԱԿ.— Գետ։

ԱՐՄԻԿ.— (Ուրախ) Գե՜տ, գե՜տ։

ԳՈՀԱՐ.— Իսկ գետի հետևը հենց կոլտնտեսությունն է։

ԱՐՄԻԿ.— (Վազում է մի կողմ և նայում) Ահա, գետը, պսպղում է ծառերի արանքում (Սմբատին)։ Մի հեռադիտակը տուր, խնդրեմ։
Սմբատը ակամա մոտենում է Արմիկին և մեկնում նրան հեռադիտակը։

ՍՄԲԱՏ.— Զգե՛ս։

ԱՐՄԻԿ.— (Նայում է հեռադիտակով) Իսկ գետի այն կողմը մարգագետինն է, ամբողջովին ծաղիկների մեջ թաղված. այն էլ հավանա-



բար դեղի՛ն, դեղի՛ն։ (Երեխաներին)։ Եկեք վերադարձի ճամփին ծաղկեփնջեր քաղենք։

ՑՈԼԱԿ.— (Մոտենում է Արմիկին) Մի տուր ես նայեմ (վերցնում է հեռադիտակը, նայում է)։ Ճի՛շտ է, գետ է և մարգագետին։ Միայն չեմ տարբերում, թե ինչ ծաղիկներ են։ (Հեռադիտակը տալիս է Սմբատին)։

ԱՐՄԻԿ.— Եթե ծանծաղուտ չգտնենք, լողալով կտեղափոխվենք։

ՍՄԲԱՏ.— (Վախով գցում է հեռադիտակը, բայց նա մեջքով կանգնած է ընկեր Գոհարին և Արմիկին հակառակ, նրանք կարող են դա վերագրել նրա ճարպիկ չլինելուն)։

ԳՈՀԱՐ.— Լողալով անցնե՞լ գետը։— Հնարավոր է... Բայց սկզբից պետք է տեսնել, թե ինչ գետ է։ Մենք ձեզ հետ կլողանք, իսկ երեխանե՞րը, որոնք կգան մեր մարշրուտով...

ԱՐՄԻԿ.— Դուք ի՞նչ եք ասում, ընկեր Գոհար, մեզ մոտ բոլորը լողանալ գիտեն։ Գետն էլ մեծ չէ։

ՑՈԼԱԿ.— Իզուր չէ, որ մենք անցյալ տարի լողի գծով նորմաները հանձնեցինք։

ԳՈՀԱՐ.— Մոտենանք գետին և ամեն ինչ տեղում պարզենք։ Ահա թե ինչ։ Համաձա՞յն եք։

ԱՐՄԻԿ.— Գնա՛նք, գնա՛նք։

(Արմիկը և Գոհարը գնում են։ Ցոլակը հետևում է նրանց։

ՍՄԲԱՏ.— (Բռնելով Ցոլակի ձեռքը) Սպասի՛ր։

ՑՈԼԱԿ.— Ի՞նչ է պատահել։

ՍՄԲԱՏ.— Գործ կա։

ՑՈԼԱԿ.— (Զարմացած) Գո՞րծ։

ՍՄԲԱՏ.— Դու կարո՞ղ ես գաղտնիք պահել։

ՑՈԼԱԿ.— Գաղտնի՞ք, ի՞նչ գաղտնիք։

ՍՄԲԱՏ.— Խոստացիր, որ ոչ ոքի չես ասի։

ՑՈԼԱԿ.— Խոստանում եմ։

ՍՄԲԱՏ.— Ես չեմ գա ձեզ հետ, ես... ես... դե հիվանդ եմ։

ՑՈԼԱԿ.— Հիվա՞նդ։

ՍՄԲԱՏ.— Դե, ընդհանրապես հիվանդությունը դա միայն նրանց համար է։ Դիտմամբ... (հայացքը է գցում թփուտի կողմը)։ Ես, գիտե՞ս, անձամբ... (Ցոլակի ականջին ինչ որ բան է շշնջում)։

ՑՈԼԱԿ.— (Համարյա սարսափած) Չի կարող պատահել։

ՍՄԲԱՏ.— Ազնիվ խոսք։

ՑՈԼԱԿ.— Բայց ո՞նց թե այդպես պատահեց։ Չեմ հասկանում։

ՍՄԲԱՏ.— Շատ հասարակ, չհաջողեցրի։ Միշտ ֆուտբոլ ու ֆուտբոլ...

ՑՈԼԱԿ.— Բայց ինչո՞ւ էիք դուք այն ժամանակ

*բոլորի մոտ պարծենում։*

ՍՄԲԱՏ.— *Ես էլ չգիտեմ։ Ընդհանրապես ես հիվանդ կձևանամ, իսկ երբ պետք լինի բոլորի հետ արշավի գնալ, կասեմ, որ ոտքս ծռվել է։*

ՅՈԼԱԿ.— *Եվ մի՞թե դա ճիշտ է՝ ստել և անվերջ ձևացնել։ Ախր դա լավ բան չէ։*

(Դադար):

ՍՄԲԱՏ.— (Մռայլ) *Ի՞նչ անեմ, քո կարծիքով ճամբարից փախչե՞մ։*

ՅՈԼԱԿ.— *Ինչո՞ւ։ Դա ելք չէ։* (Մտածում է): *Գիտե՞ս ինչ, այժմ նրանց ամբողջ ճշմարտությունն ասա։*

ՍՄԲԱՏ.— *Խոստովանե՞մ...*

ՅՈԼԱԿ.— (Եռանդուն) *Փախչել՝ հենց դա է խայտառակություն։ Եվ հետո՝ վախկոտություն։ Քեզ եմ ասում՝ ասա, խոստովանիր։*

ՍՄԲԱՏ.— *Չգիտեմ ինչպես...*

ՅՈԼԱԿ.— *Իսկ դու սկզբից ասա, ինչպես կրկնողության ժամանակ։ Դե, անվախ սկսիր։*

ՍՄԲԱՏ.— (Երկար դադարից հետո): *Ընկեր Գոհար... և Արմիկ* (մոտենում է բեմի առաջամասին): *Եվ ընդհանրապես մեր ճամբարի բոլոր երեխաներ։ Ձեզ մոտ իզուր տեղը պարծեցա, ես ոչ մի սպորտսմեն էլ չեմ։ Ահա նույնիսկ այժմ գետի կողմը գնալ չեմ կարող։ Բա որ հանկարծ լողալու տեղ պատահի՞։*

(Նայում է Յոլակին, նա հավանություն տալով շարժում է գլուխը): *Որովհետև ես լողալ չգիտեմ* (Շփոթված): *Բոլորովին չգիտեմ. ո՛չ կրոլ, ո՛չ բրաս, չեմ կարող։ Միայն ֆուտբոլ եմ խաղում, այն էլ՝ վատ։*

ՅՈԼԱԿ.— (Խրախուսելով): *Այդպես, այդպես, շարունակի՛ր։*

ՍՄԲԱՏ.— *Կրծքանշանն էլ տանը չեմ մոռացել։ Պարզապես չունեմ։ Բայց խոստանում եմ ձեզ, երեխանե՛ր, լողալ էլ սովորել, «ԿՊԱՊ»-ի բոլոր նորմաներն էլ հանձնել։ Եվ անպատճառ ա՛յս տարի։*

(Վարագույր):



# ՓՈՔՐԻԿ ՎԱՐՊԵՏԸ

*Մ. ԹԱՐՅԱՆ* — *Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*

Սաքոն առած մուրճ ու մեխ՝
Ծակոտում էր ամեն տեղ.
Մեկ ծակում էր հատակը,
Ու մեկ քանդում տան պատը...

Տատիկն ասաց,— ա՛յ Սաքո,
Ի՞նչ է արած գործը քո,
Թե վարպետ ես դու կարգին,
Վեր կաց, գնա մեր այգին։

Տե՛ս, ցանկապատն է թեքվել,
Դուռը տեղից է պոկվել,
Վերցրու քեզ հետ մուրճ ու մեխ
Ու գործ արա դու այնտեղ։

Լսեց Սաքոն տատիկին
Ու վազ տվեց նա այգին.
Կոտրած դուռը կախ տվեց,
Ցանկապատն էլ նորոգեց։

Ու գործից գոհ՝ խնդագին
Կանչում է նա ամենքին,
— Ես վարպետ եմ իսկական,
Բերե՛ք, էլ ի՞նչ գործեր կան...






Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

# ԼԵՆԻՆԻ ՀՐԱՄԱՆԸ

Ա. ԿՈՆՈՆՈՎ

*Չապաևականները սպիտակ կազակներին հաղթեցին և 1919 թվականի սկզբին արշավեցին Կոլչակի դեմ։*

*Ցարական ծովակալ Կոլչակը այդ ժամանակ Սիբիրից շարժվում էր Մոսկվայի վրա։ Նա վիթխարի բանակ ուներ։ Բայց շուտով կոլչակցիները իրենց կաշվի վրա զգացին Չապաևի հարվածը։ Կոլչակը նահանջեց Սպիտակ գետի կողմերը և այնտեղ ամրացավ մի բարձր ափի վրա, Ուֆա քաղաքի մոտ, իսկ գետի մյուս՝ ցածրադիր ափին կանգնել էր Չապաևի դիվիզիան։*

*Չապաևը ոչ մի րոպե չկորցրեց։ Մարտիկները գետն անցնելու համար գերաններից լաստեր կապեցին, մի քանի նավակ ձեռք բերին։ Այդ ժամանակ Կրասնի Յար գյուղից ուրախ լուր եկավ. այնտեղ սպիտակներից խլել էին երկու շոգենավ։*

*— Դե, Կոլչակին էլ փրկություն չկա,— ասաց կարմիր բանակայիններց մեկը։— Հիմա Ուֆայից կգլորվի մինչև Սիբիր։*

*Նա նայում էր առաջ։ Այնտեղ, գետից այն կողմ ընկած էր մի ավազաբլուր։ Նրա վրա երևում էին տներ, որոնք հեռվից շատ մանրիկ էին երևում։ Նրանց մեջ, դարչնագույն փոքրիկ սյան նման վեր էր ցցվել հրշեջ դիտանոցը։ Չապաևը լուռ մոտեցավ և ժպտալով նայեց կարմիր բանակայինին։*

*— Ի՞նչ է, լեռը բա՞րձր է,— հարցրեց նա։*

*Կարմիր բանակայինն արագ շուռ եկավ և տեսավ Վասիլի Իվանովիչին։ Նա կարմրեց, նորից նայեց Ուֆայի լեռանը և պատասխանեց.*

*— Ինչ կա որ, թող բարձր լինի։ Միևնույն է Կոլչակին կպոկենք էնտեղից։*

*Գետափի վրա չապաևականների գլխավերևում երևաց թշնամու ինքնաթիռն ու սկսեց գնդակոծել գետանցը։*

*Հենց այդ պահին ժամանեց ճակատի հրամանատար ընկեր Ֆրունզեն։ Նա բերել էր Լենինի հրամանը՝ ինչ գնով էլ լինի Ուֆան գրավել և Կոլչակից հետ խլել Ուրալը՝ իր գործարաններով ու երկաթուղային ճանապարհներով։*

*Չապաևականները հավատացած էին, որ կհաղթեն։*

*Կրասնի Յարի մոտ հոսող գետով առաջինն անցավ Իվանովո-Վոզնեսենսկի բանվորական գունդը։ Բայց շուտով նա ստիպված էր կանգ առնել, անհրաժեշտ էր սպասել համալրման, օգնության։ Իսկ այդ ժամանակ Կոլչակն անցավ հարձակման։*

*Իվանովցիները պաշտպանվելով, սպառեցին համարյա բոլոր փամփուշտները և սկսեցին նահանջել դեպի գետը։ Հանկարծ նրանց կողմն արշավեցին մի քանի ձիավորներ։ Նրանցից մեկը ձիուց արագ ցած թռավ, վերցրեց հրացանը և անցավ գնդի գլուխը։ Մարտիկները ճանաչեցին Ֆրունզեին։*

*Եվ այս անգամ Իվանովյան հերոսների գրոհը այնպես կատաղի էր, որ կոլչակյանները երերացին և նորից նահանջեցին։*

*Սակայն Կոլչակը չէր ուզում առանց վճռական ճակատամարտի Ուֆան հանձնել։ Ամբողջ օրը արյունահեղ մարտ մղվեց։ Հաջողությունը անցնում էր մերթ մեկի, մերթ մյուսի կողմը։*

*Այդ ճակատամարտում Չապաևին ծանր վիրավորեցին։*

*Ահա թե դա ինչպես տեղի ունեցավ։ Գետն անցնող չապաևականների գլխավերևում պտտվում էր թշնամու օդանավը։ Շատ ցածր թռիչքով, նա գնդացրային կրակ բաց արեց։ Գնդակներից մեկը դիպավ Չապաևի գլխին։ Արյունը ողողեց նրա ճակատը։ Նա փորձեց կատակել. «Ոչինչ, արյուն*

կորցնելն օգտակար բան է», իսկ ինքը ցավից ատամներն էր սեղմում։

Վեց անգամ փորձեցին գնդակը հանել, վեց անգամն էլ անհաջող, այնպես ամուր էր խցկվել։ Վերջապես վերջացրին վիրահատումը։ Ուզեցին Չապաևին հիվանդանոց ուղարկել բուժվելու, բայց նա հրաժարվեց և մնաց շարքում։ Այդ ժամանակ Ֆրունզեն քիչ մնաց սպանվեր։ Ռումբը սպանել էր նրա ձիուն, իսկ իրեն՝ շշմեցրել։

Երեկոյան ճակատային գիծն անցնելով, չապաևցիների մոտ էր եկել Ուֆայի բանվորներից մեկը։ Նա պատմեց, որ իրեն հաջողվել էր թաքուն լսել սպիտակ գեներալների խոսակցությունը։ Գեներալները որոշել են վաղ առավոտյան կարմիրների դեմ ուղարկել կոլչակյան ամենաուժեղ զորամասերը։

Դրանց ամենաընտիր զորամասերը կազմված էին զուտ հրամանատարական գնդերից, ոչ մի զինվոր չկար նրանց մեջ. հրամանատարները մարտի էին գնում որպես շարքայիններ, իսկ նրանց ղեկավարում էին գեներալները։ Լուսաբացին նրանք պետք է ճեղքեին կարմիրների դիրքերը, շրջապատեին Չապաևի դիվիզիան և ոչնչացնեին։

Ամբողջ գիշեր չապաևականները պատրաստվում էին թշնամուն դիմավորելու։ Մարտիկներից ոչ մեկը այդ գիշեր չքնեց։

Վաղ առավոտյան գաղտագողի, անշշուկ, խլացնելով անգամ զենքերի շառաչյունը, սպայական գնդերը սկսեցին մոտենալ մեր դիրքերին։ Նրանք հույս ունեին աննկատելի մոտենալ, քնած ուղեկալին աչհարբեկել, ջախջախել, ոչնչացնել... Բայց երբ մոտեցել էին մեր շղթային, բոլոր կողմերից հրամանով սկսեցին գործել մարտի պատրաստ տասնյակ գնդացիրներ։

Կոլչակի լավագույն գնդերն այդ կրակով ոչընչացվեցին։ Հրամանատարների մի մասն ընկավ



դաշտում, հասած ու տրորված հաճարի արտերի մեջ, մյուս մասը փախավ։

1919 թվականի հունիսի 9-ին չապաևականները կատարեցին Լենինի հրամանը։ Ուֆան գրավված էր։

## ԿԱՐՄԻՐ ԴՐՈՇԸ

Սաղարթախիտ անտառի կանաչ բացատում բոցկլտում է պիոներական խարույկը։ Կրակի կարմիր լեզուները պատռելով մթության սև քողը լուսավորում են ճամբարականների երջանիկ դեմքերը։

— Այսօրվա մեր զրույցը,— սկսում է ավագ ջոկատավարը,— կարմիր դրոշի մասին է, այն փառապանծ դրոշի մասին, որի ներքո շատ սերունդներ մարտնչել են ազատության և երջանկության համար։

Դեռ հին ժամանակներից կարմիր գույնը դարձել է թագավորների, կապիտալիստների ու կալ-

վաճառների դեմ ժողովուրդների անհաշտ պայքարի խորհրդանիշը:

Կարմիր դրոշի տակ 1871 թվականի մարտի 18-ին ծնվեց Փարիզյան կոմունան: 1871 թվականի մայիսի 21-ին, երբ բուրժուազիայի զորքերին հաջողվեց ներխուժել ռևոլյուցիոն Փարիզ, կոմունարները ամբողջ քաղաքում բարիկադներ կառուցեցին:



Փարիզի բանվորները մի ամբողջ շաբաթ դաժան մարտեր էին մղում: Շաբաթվա վերջում թշնամիները շրջապատեցին Ռամպոնա փողոցի վերջին բարիկադը ևս, որի վրա դեռ փողփողում էր ալ դրոշը:

Բարիկադի վրա կենդանի էին մնացել միայն երկուսը՝ մի բանվոր և մի տղա: Երբ թշնամիները մոտեցան, տարեց կոմունարը ձողի վրայից հանեց կարմիր դրոշը և դիմելով պատանի կոմունարին, ասաց.

— Պահպանիր այն, ինչ գնով էլ լինի:

Տղան կարմիր կտավը փաթաթեց իր մարմնի շուրջը և գնդակների տարափի տակ վազեց փողոցով: Նրան հաջողվեց փրկել կարմիր դրոշը:

Շատ տարիներ անց Փարիզի կոմունարների թոռները այդ դրոշը բերեցին Մոսկվա և դրեցին դամբարանում՝ մեծ Լենինի դագաղի մոտ:

1905 թվականին ռևոլյուցիոն պայքարը Ռուսաստանում լայն ծավալ էր ստացել: Տոմսկ քաղաքում ոստիկանների դեմ տեղի ունեցած գոտեմարտում մահացու կերպով վիրավորվեց դրոշակակիր Կոնոնովը: Հավաքելով իր վերջին ուժերը, նա ձողից պոկեց դրոշը և թաքցրեց կրծքի վրա: Ցույցը ցրեցին, իսկ Կոնոնովի մարմինը ոստիկանները ուղարկեցին դիարան:

Սերգեյ Միրոնովիչ Կիրովը, որ ղեկավարում էր այդ պայքարը, ուշադրություն չդարձնելով գազազած ոստիկանների ճանկերն ընկնելու վտանգին, գաղտնի կերպով մտավ դիարան, որոնեց Կոնոնովի դիակը և նրա կրծքի վրա գտավ հավատարիմ ընկերոջ արյունով ներկված դրոշը:

Եվ երբ Տոմսկի բանվորները թաղում էին Կոնոնովին, մարտական կարմիր դրոշը նորից փողփողաց բանվորական ջոկատների գլխավերևում:

Իսկ 1917 թվականի հոկտեմբերյան օրերին կարմիր դրոշը փողփողաց մեր ամբողջ հայրենիքի վրա: Եվ այդ ժամանակվանից այն դարձավ մեր Հայրենիքի պետական դրոշը:

Կարմիր դրոշը կոմունիստական մեծ պարտիայի նվիրվածության խորհրդանշան է, քաջության, արիության խորհրդանշան:

Հայրենական Մեծ պատերազմի օրերին Կարմիր դրոշը ոգեշնչում էր մեր ռազմիկներին ու նրանց տանում դեպի նորանոր հաղթանակներ:

Թամանյան դիվիզիայի մարտիկները հայ ժողովրդից ստացած մարտական դրոշը Կովկասյան նախալեռներից մարտերով քաջաբար հասցրին Բեռլին և ծածանեցին Ռայխստագի շենքի վրա:

Կիեցի անվեհեր պիոներ Կոստյա Կրավչուկը 1944 թվականին պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով, այն բանի համար, որ օկուպացիայի ժամանակ Սովետական բանակի գնդի դրոշները պահել էր և նորից վերադարձրել գնդի հրամանատարությանը:

1947 թվականի մարտին, ՀամԼԿԵՄ Կենտրոնական Կոմիտեն պիոներական դրուժինաների համար սահմանեց կարմիր դրոշակ: Նրա վրա ոսկյա տառերով գրված է պիոներական նշանաբանը. «Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղիր պատրաստ»: Հենց այդտեղ էլ պիոներական կրծքանշանի սպիտակ ժապավենի վրա մարտական պատասխանը՝ «Միշտ պատրաստ»:

Երեխաների կյանքի ամենապայծառ, ամենահուզիչ դեպքը կապված է այդ դրոշի հետ, որովհետև պիոներական դրոշի ներքո երեխաները հանդիսավոր խոստում են տալիս՝ դառնալ կոմունիզմի մեծ գործի անվեհեր և տոկուն մարտիկներ:

# ԾԵՐ ԲՈՑՄԱՆԻ ՊԱՏՄԱԾԸ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ծովը թեթև ալեկոծվում էր։ Ափում էին կապույտ ալիքները՝ ճերմակ, փրփրադեզ կատարներով։ Ճեղքելով ալիքները, ծովախորշով անցնում էին պահականավերն ու արագընթաց կատերները։ Իսկ ափին բոլորովին մոտիկ խարիսխ էր գցել մի հսկա հածանավ՝ բարձր կայմերով ու հրանոթային աշտարակներով։ Հածանավի վրա երևում էին միայն հերթապահ նավաստիները։ Վերևում, հրամանատարական կամրջակի վրա կանգնած էր նրանցից մեկը՝ հրացանը ձեռքին, հայացքը հառած հեռուն։ Քամին խաղում էր նրա գլխարկի ոսկեխարիսխ ժապավենների և սպիտակ երիզներով կապույտ օձիքի հետ։ Նրա կրծքին՝ «օձիքի եռանկյունի բացվածքից երևում էր զոլավոր ներքնաշապիկը՝ տելնյաժկան։

Սպարտակը, որ մայրիկի հետ շրջում էր ծովափին, հանկարծ հարցրեց.

— Մայրիկ, իսկ ինչո՞ւ նավաստիների գլխարկները հովար չունեն։



Մայրիկը դեռ չէր պատասխանել, երբ Սպարտակը սկսեց նոր հարցեր տեղալ.

— Իսկ ինչի՞ համար է նրանց մեծ օձիքը, ինչի՞ համար են օձիքի վրայի սպիտակ գծերը։ Ծովայիններն ինչո՞ւ են զոլավոր շապիկ հագնում, ինչո՞ւ են գլխարկին ժապավեններ կապում։

Մայրիկը դեռ մտածում էր, թե ի՞նչ պատասխան տա, երբ նրանք նկատեցին ծովափնյա նստարաններից մեկին նստած ծեր բոցմանին։



— Ա՛յ թե ով լավ կպատասխանի քո հարցերին,— ասաց մայրիկը և Սպարտակի թևից բռնած մոտեցավ ծերունուն։

Եվ, իհարկե, ծերուկ բոցմանն ամեն ինչ պատմեց նրանց, իսկ Սպարտա՞կը... Դե նա ոչինչ չմոռացավ. ինչ որ լսեց բոցմանից, ամռանը ճամբարում, բացկլտում խարույկի շուրջը պատմեց իր ընկերներին։



Ահա թե ինչ էր պատմել ծեր բոցմանը։

* * *

Վաղուց, շատ վաղուց, դեռ այն ժամանակ, երբ Կոլումբոսը չէր հայտնաբերել Ամերիկան, իսկ Մարկո Պոլոն դեռ չէր գտել Հնդկաստան տանող ծովային ճանապարհը, աշխարհի ծովերում ու օվկիանոսներում հածում էին բազմաթիվ նավեր։ Այդ նավերն, ի՞նչ խոսք, այսօրվա նավերի նման մոտորներ ու շոգեմեքենաներ չունեին, բայց նրանք էլ սուրում էին ծովի մակերևույթով և շատ արագ։ Մարդիկ օգտագործում էին քամու ուժը։ Բայց չէ՞ որ քամին միշտ այն ուղղությամբ չէր փչում, ինչ պետք էր ծովայիններին։ Սակայն մարդիկ գտել էին նաև դրա ճարը։ Ամեն մի նավի վրա բազմաթիվ առագաստներ կային։ Դրանցից ամեն մեկն իր նշանակությունն ուներ, իր դերը։ Մի քանիսը քամին բռնում և ուղղում էին մյուսներին, սրանք էլ իրենց հերթին՝ երրորդներին։ Այսպիսով հնարավոր էր լինում նավը շարժել ցանկացած ուղղությամբ։ Իսկ առագաստները ծանր ու հաստ կտավից էին պատրաստում։

*Դրանք բարձրացնելն ու հավաքելը, մանավանդ քամու ժամանակ, մի կողմից մյուսը թեքելն այնքան էլ հեշտ բան չէր։ Նավաստիները ծանր աշխատանք էին կատարում։ Նրանք հաստ, թաց ճոպանները ուսերին գցած քայլում էին տախտակամածի մի ծայրից մյուսը և այսպիսով միայն առագաստները շարժում։ Այդ աշխատանքը կատարելիս նրանց հագուստը պատռվում էր, հատկապես ուսերը։ Եվ նավաստիները կաշվից լայն օձիք էին կարում, որ փռվում էր նրանց ուսերին ու հագուստը պաշտպանում պարանի շփումից։*

*Հետագայում, երբ սկսեցին գործել շոգենավերը և առագաստանավերը կամաց-կամաց վերացան, ծովայինները՝ որպես իրենց հագուստի անբաժան մասը, պահպանեցին նաև օձիքը, որն այլևս կաշվից լինելու անհրաժեշտությունը չուներ։ Նա դարձավ ամեն մի ծովայինի հպարտության առարկան, նրա գլուխը՝ դրոշակը, որ նավաստու սիրելի ծովի գույնն ունի։*

*Բայց առագաստանավերի վրա աշխատելն ուրիշ դժվարություններ էլ ուներ։ Ահա նավաստիներից մեկը մագլցում է կայմի վրա, անցնում նրա հորիզոնական ձողերին և կորչում առագաստների մեջ։ Ներքևից նավաստու աշխատանքները ղեկավարող բոցմանը հաճախ աչքից կորցնում էր նրան, քանի որ նա նույն գույնի հագուստ էր կրում, ինչ-որ առագաստը։ Նավաստին ձուլվում էր առագաստին։ Եվ ահա դրանից խուսափելու համար ծովայիններն սկսեցին զոլավոր շոր հագնել։ Նրանք այդ զոլերի համար էլ ընտրեցին իրենց սիրելի ծովի գույները՝ կապույտը և սպիտակը։ Ահա թե ինչու են նավաստիները զոլավոր շապիկ հագնում։*

*Իսկ նրանք հովար չեն կրում, որովհետև առագաստների մեջ աշխատելիս, հովարն հաճախ կպչում էր առագաստներին և խանգարում նավաստիներին։*

*Ծովայինների ոսկեխարիսխ ժապավեններն էլ շատ հին պատմություն ունեն։ Հայտնի է, որ ծովի վրա ուժեղ քամիներ են լինում։ Քամին հաճախ թռցնում էր նրանց գլխարկը և ծովը գցում։ Ծովայինները սկսեցին գլխարկներին ամրացված ժապավենները քամու ժամանակ կապել պարանոցից։ Եթե քամին գլխարկը թռցներ էլ, ապա ծովը չէր գցի։ Երբ ծովայինները գնում էին հեռավոր նավարկության, նրանց կանայք, քույրերն ու հարազատները, որպես հիշատակ նավաստիներին նվիրում էին ժապավեններ, որոնց վրա ոսկեթելով ասեղնագործում էին իրենց անունը, ծայրերին էլ խարիսխներ։ Այդպես էլ ժապավենը մտավ ռազմածովային նավատորմի տարազի մեջ, որպես նրա անբաժան մասը։ Նրա վրա գրվում է այն նավի անունը, որի վրա ծառայում է նավաստին։ Իսկ նավաստու օձիքի վրայի սպիտակ գծերից ամեն մեկը մի պատմություն ունի։*

*Սպարտակն այդ մասին կպատմի մի ուրիշ խարույկի շուրջը, իսկ այժմ իմացեք, որ այդ երեք գծերը Ռուսական նավատորմի փառապանծ հաղթանակների պատվին են գծված։ Դրանք Սինոպի, Չեսմենի և Գանգուտի ճակատամարտերի խորհրդանշաններն են։*



# ԳԼՈՒԽ ՈՒՆԵՐ ՆՈՅՈՆԸ, ՃԵՈ՞Չ



*(Մոնղոլական հեքիաթ)* *Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Կար-չկար մի գոռոզ, շատ գոռոզ նոյոն (իշխան) կար։ Ինչպես բոլոր նոյոնները, նա էլ նստում էր սամույրե իր բարձր աթոռին և դրա համար էլ միշտ մի գլխով բարձր էր լինում իր բոլոր ստորադրյալներից։

Մի անգամ նոյոնը իր շքախմբով որսի գնաց։ Երեկոյան հոգնած որսորդները ուզեցին հանգստանալ։ Նրանց առջև տարածվում էր հարթ ու հարթարոտ տափաստանը։ Փշավոր թփուտներից բացի, այնտեղ բարձրացել էր միայն մի ծառ՝ ծռտռմռտ բնով և լայն բացված ճյուղերով։ Հենց որ ուզեցին պատրաստվել գիշերելու, գլխի ընկան,

որ իրենց հետ ոչ մի բազկաթոռ չեն վերցրել, որ նոյոնին վրան նստեցնեն ու իրենք փռվեն նրա ոտների մոտ: Չէ՞ որ նոյոնը չի ուզենա նստել մնացածների հետ միասին:

Երբ մեծավորներից մեկը խոր գլուխ տալով, նշաններով հրավիրեց, որ նոյոնը նստի, նա արհամարհանքով ասաց. «փըֆ» և գլուխը բացասաբար այնպես օրօրեց, որ դողաց նրա գլխարկի վրա փակցված զնդիկ—տոհմանշանը: Ախր նոյոնը այնքան չէր ստորանա, որ խոսեր մեծավորների հետ:

Ի՞նչ պետք էր անել: Շատ միտք արին, վերջը գտան: Իսկ նոյոնը այդպես էլ կանգնած մնաց:

Եվ ահա մեծավորներից մեկը ասաց.

— Եկեք ծառի մի հաստ ճյուղ թեքելով կռացնենք, պինդ կապենք գետնին և նոյոնին նստեցնենք նրա վրա, ինչպես բազկաթոռին:

Այդպես էլ արին: Բայց երբ նոյոնը հպարտ-հպարտ բազմեց ճյուղին, թոկը կտրվեց: Նոյոնը օդը թռավ, և մյուս ճյուղն էլ այնպես թափով կպավ նրա գլխին, որ գլուխը պոկվեց ու թռավ մի կողմ:

Վախեցած ծառաները վերցրին իրենց տիրոջ մարմինը և գնացին գլուխը փնտրելու: Ծառից մի հիսուն քայլ հեռու ընկած էր ինչ-որ մի գլուխ: Ծառաները վերցրին այն:

— Ասա, Ցենդե,— դիմեց մի ծառան մյուսին,— սա մեր նոյոնի գլո՞ւխն է:

— Դե ես ո՞նց իմանամ,— պատասխանեց Ցենդեն:— Ես իսկի հանդգնո՞ւմ էի նայել մեր տիրակալի դեմքին:

— Դե դո՛ւ ասա, Ժամյան, իսկապե՞ս սա մեր նոյոնի գլուխն է,— հարցրին մյուս ծառային:

Բայց նա էլ պատասխանեց.

— Ես միշտ այնպես էի կուչ գալիս նոյոնի առաջ, որ նրա երեսը չէի կարող տեսնել:

Այսպես բոլոր ծառաներն ու մեծավորները մեկը մյուսի ետևից չկարողացան ասել՝ դա նոյոնի գլո՞ւխն է, թե ոչ:

Այն ժամանակ նրանցից մեկն առաջարկեց.

— Այս գլուխը տանենք սուրբ լամայի (քուրմ) մոտ ու նրանից հարցնենք: Մեր ուսուցչի իմաստությունը անսահման է, և նա, ինչ խոսք, կիմանա՝ ում գլուխն է սա:

Գլուխը լամայի մոտ տարան: Նա զննեց այն ու ասաց.

— Նոյոնի գլխին գլխարկ պետք է լինի: Եթե այդ գլխարկի վրա տոհմանշան տեսնենք, նշանակում է դա հենց ձեր նոյոնի գլուխն է, որ կա:

Բայց այն ժամանակ, երբ նոյոնը ընկավ, գլխարկը տոհմանշանի հետ թռավ գլխից. դա գտան առանձին և էլի չկարողացան որոշել, թե ում գլուխն է այն:

Վերջապես մի անցորդ խորհուրդ տվեց ծառաներին.

— Գլուխը տարեք նոյոնի կնոջ մոտ: Ով էլ որ չճանաչի, գոնե նա կճանաչի իր մարդու գլուխը:



Նա, իհարկե, ձեզ կասի՝ դա նոյոնի գլո՞ւխն է, թե՝ ոչ:

Գլուխը բերեցին նոյոնի կնոջ մոտ: Նա նայեց ու ասաց.

— Էհ, գուցե հենց նրա գլուխն է, գուցե՝ չէ: Ի՞նչ իմանամ: Իմ մարդը այնպիսի չար գազան էր, որ ես էլ էի վախենում դեմքին նայել...

Այդպես էլ մարդիկ չիմացան, թե ում գլուխն է դա, և ընդհանրապես նոյոնը գլուխ ունեցե՞լ է, թե՝ ոչ:



## ՈՒՍՈՒՑՉԻՍ

Իմ թանկագին, իմ տնեմտե,
Սիրում եմ քեզ ես անսահման,
Գարուն կյանքս է քեզնով ցնծում,
Թևեր առնում, ուրախ նախրում:

Իմ ուսուցիչ, իմ բարեկամ,
Սիրտս ես քեզ ինչպե՞ս բանամ,
Ինչպե՞ս նայտնեմ թոթով լեզվով,
Թե ինչքան եմ հրպարտ քեզնով:

*ՍՐԲՈՒՀԻ ՍԱՋԼԸՅԱՆ*

*Խասքովայի բուլղարական վարժարանի 7-րդ դասարանի աշակերտուհի*

## ԾԱՂԿԱՁՈՐԻՆ

*ՌԱԶՄԻԿ ՏՈՆՅԱՆ*

Կանաչ անտառն է խշշում
Թեղենիսի լանջերին,
Մեղմիկ հովերն են շրշում
Փարված հողին ու ջրին:
Փոքրիկ հյուրերդ են խինդով
Նորից քո գիրկը դառնում,
Թավուտների մեջ քո զով,
Նրանք հանգիստ են առնում:

Ծաղկունքի պես գունագեղ,
Թիթեռի պես թրվռուն՝
Երգում, պարում են մեկտեղ
Առավոտից իրիկուն:
Ամեն եկող ամռան հետ
Դու մանկանում ես այնպես,
Թե զարունդ դառնա ետ՝
Կնախանձի անշուշտ քեզ:

# ՄԵՐ ՎԱՂՎԱ ՏԵԽՆԻԿԱՆ

Գ. ԲԼՈԿ

Մինչև այն օրը, երբ Սովետական Միությունում գործարկվեց աշխարհի առաջին ատոմային էլեկտրակայանը, մարդկությունը էներգիան ստանում էր միայն ցերեկային լույսից: Անժխտելի է, որ էներգիա գոյություն ունի անտառից բերված փայտի, երկրի ընդերքից ստացվող նավթի, ածուխի, տորֆի, բարձունքից թափվող ջրի, տերևներ շարժող քամու և փրփրացայտ ալիքների մեջ: Դրանք ոչ այլ ինչ են, եթե ոչ՝ արևի ջերմության կերպարանափոխությունը:

Բնության շտեմարանում ջերմության տարբեր տեսակի պաշարների կուտակումը կազմում է արևից ստացվող էներգիայի մոտավորապես մեկ տոկոսը, իսկ մնացած 99 տոկոսը մարդկությանը օգուտ չի տալիս և կորչում է ապարդյուն: Նույնիսկ առավել կատարելագործված ներքին այրման շարժիչները վերադարձնում են այդ էներգիայի կեսից էլ պակաս, շոգեմեքենաները՝ մինչև քսան տոկոս, շոգեքարշները՝ հինգ: Մնացածն ամբողջովին բաց է թողնվում տիեզերական անսահմանության մեջ: Բացի այդ, էլեկտրաէներգիան միանգամից և դյուրին կերպով չի ստացվում. հարկավոր է աշխատանք, հետազոտական ու ստեղծագործական տաղանդ, մեքենաների և մեխանիզմների համար պետք է հսկայական քանակությամբ մետաղ:

Բայց մի՞թե չի կարելի փոխել էլեկտրաէներգիայի ստացման եղանակները և այն ստանալ ուղղակի ջերմային էներգիայից:

Անցած դարի առաջին քառորդում գերմանական գիտնական Զեեբեկը ստեղծեց ջերմաէլեմենտ, որի շնորհիվ ջերմային էներգիան առանց մեքենաների օգնության անմիջապես վերածվում էր էլեկտրականության: Բայց Զեեբեկը չկարողացավ պարզաբանել իր կատարած հայտնագործության էությունը և երկար ժամանակ պայքարում էր հենց ջերմաէլեկտրական հոսանքի գաղափարի դեմ:

Ուրիշ գիտնականներ ուղղեցին նրա սխալը, բայց գործը կիսատ թողեցին, և դա տևեց հարյուր տարի:

Այն ժամանակ միայն կատակի համար ջերմաէլեմենտը կարելի էր համարել մեքենա, որը ջերմությունը վեր է ածում էլեկտրականության: Նրա օգտակար գործողության գործակիցը հավասար է 0,1 տոկոսի: Բնական գիտությունների այն ժամանակվա ցածր մակարդակը հնարավորություն չէր կարող տալ այդ երազանքը դարձնել իրականություն:

— Քսանհինգ տարի սրանից առաջ,— ասում է ակադեմիկ Իոֆֆեն,— իմ առաջ խնդիր դրեցին, թե արդյո՞ք ջերմաէլեմենտի օգտակար գործողության ցածր գործակիցը չի կախված էլեկտրական հոսանքը հաղորդող մետաղի հատկությունից: Երբեք չեմ մոռանա այն ուրախությունը, երբ համոզվեցի իմ ենթադրության ճշտության մեջ: Այդ գործում ինձ օգնեցին կիսահաղորդիչները: Երբ ես ծանոթացա դրանց հետ, եկա այն եզրակացության, որ հատկապես դրանցում են գտնվում ջերմաէլեմենտի օգտագործման նոր հնարավորությունները: Ես որոշեցի, որ այդ հատկությունը հնարավորություն կտա ծախսվող ջերմության ոչ թե կեսը, այլ 3—4 տոկոսը էլեկտրականության վերածել:

Հավանական է, որ այդ թվերը ձեզ փոքր են թվում, բայց պետք է գիտենալ, որ փայտը տալիս է էլեկտրաէներգիայի 0,1 տոկոսը, այսինքն 30-ից 40 անգամ պակաս:

Այս հեռանկարները ոգևորեցին ու գրավեցին համերաշխ էնտուզիաստների մի խմբի: Նրանք ակտիվորեն ձեռնամուխ եղան կիսահաղորդիչների ուսումնասիրությանը:

## Դոմնա-էլեկտրակայան

Ջերմաէլեկտրական կառուցումների լաբորատորիայում կա նավթի հին ձևի մի լամպ. այդպիսի լամպեր ռևոլյուցիայից առաջ շատ կային: Երկարավիզ արվականման ապակու շուրջը մարտկոց է հարմարեցված, որից սկսվող հաղորդալարը միացված է «Ռոդինա» ռադիոընդունիչին:

«Ի՞նչ է, նավթի լամպը կարող է գործի՞ գցել ռադիոընդունիչը», գուցե հարցնեք դուք: Ճիշտ այդպես: Նավթի լամպը միաժամանակ երկու գործ է կատարում. և՛ լույս է տալիս, և՛ էլեկտրական հոսանք է արտադրում:

Լամպը վառելուց հետո միացրեք անջատիչը: Սենյակը ողողվում է հաճելի երաժշտությամբ: Ինչպե՞ս կատարվեց այդ «հրաշքը»: Մեջտեղ է գալիս մի բարակ թիթեղ: Իհարկե, այդ թիթեղը միայնակ չէ, ունի բազմաթիվ երկվորյակ քույրեր, դրանք գտնվում են մարտկոցի շերտերի տակ: Յուրաքանչյուր թիթեղը



*Ռադիոընդունիչն աշխատում է առանց էլեկտրականության: Նրան հոսանք է տալիս «ՏԳԿ—3» սիստեմի ջերմաէլեկտրագեներատորը, որը հարմարեցված է նավթալամպի վրա:*

բաղկացած է երկու կտոր տարասեռ լիցքավորված կիսահաղորդիչներից, որոնք ծայրերով զոդված են միմյանց: Անհրաժեշտության դեպքում այդ թիթեղները կարելի է միացնել հաջորդաբար կամ զուգահեռ: Ստացվում է ջերմային մարտկոց: Եվ երբ վառվող լամպի շիկացած անտեսանելի գազերը ապակու միջով վերև են բարձրանում՝ ճանապարհին ջերմաէլեմենտի ներսի զոդվածքները տաքացնում են մինչև 300 աստիճանի: Դրսի զոդվածքների ջերմությունն այդ ժամանակ հազիվ հասնում է 60 աստիճանի:

Բայց որտեղի՞ց է ստացվում այդ հոսանքը: Հոսանքն ստացվում է ինչպես

տսում են գիտնականները պոտենցիալների տարբերությունից, որոնք առաջ են գալիս բիբեղների զոդվածքների ջերմաստիճանների իջեցումից: Տաքացած զոդվածքների էլեկտրոններն ավելի արագ են շարժվում, քան սառը զոդվածքների էլեկտրոնները: Այդ պատճառով էլ տաքացած զոդվածքներից դեպի սառը ավելի շատ էլեկտրոններ են անցնում, քան հակառակ ուղղությամբ: Հենց սա էլ ստեղծում է հոսանք:

Այսպիսով ջերմությունից անմիջականորեն էլեկտրականություն ստացանք, որն անհրականանալի երազ էր թվում: Լամպը կիսահաղորդիչ սարքի հետ միասին կոչվում է ջերմաէլեկտրագեներատոր «ՏԳԿ—3» և արտադրվում է Մոսկվայի «Մետաղալամպ» գործարանում: «ՏԳԿ—3»-ը անմիջապես լայն կի-



*Լուցկու տուփից փոքր է ջերմաէլեմենտը, որը կարող է աշխատեցնել դաշտային «Ուրոժայ» ռադիոհեռախոսային կայանը:*

րառում է գտել այն վայրերում, որտեղ դեռևս էլեկտրակայաններ չկան. օրինակ՝ խամ ու խոպան հողերում, Հյուսիսում, տունդրայում, տայգայում և լեռներում:

Ինժեներ Ա. Ն. Վորոնինի ղեկավարած լաբորատորիայում ստացված է նոր տիպի ջերմաէլեկտրագեներատոր: Այստեղ լամպը փոխարինված է նավթավառի (керогаз) և ավելի մեծ հզորություն ունի: Նոր տիպի, «ՏԳԿ»-ն սնուցում է դաշտային կարճալիք «Ուրոժայ» ռադիոհեռախոսային կայանը:

Սակայն կարճ ժամանակից հետո այդ ջերմաէլեկտրագեներատորները ևս կանցնեն պատմության գիրկը: Դրանց կփոխարինեն նոր գեներատորներ:

Այժմ ակադեմիկ Ա. Ֆ. Իոֆֆեն երազում է նորից կրկնապատկել ջերմաէլեմենտների օգտակար գործողության գործակիցը: Իսկ երազելը գիտնականի համար նշանակում է որոնել, ստեղծագործել, գտնել: Ոչ հեռավոր ապագա-

# Ճամբարային




*Հայտնի մարդ է մեր Կարոն աշխարհում,*
*Ինչ ծառ տեսնի՝ անունն է փորփրում.*
*Իսկ ինքը ինչ՝ մի շուփ էլ չի տնկել...*
*Այ քեզ պիոնե՞ր, ծառերի լավ ընկեր:*



*Ցանկապատն ենք նորոգում ճամբարի,*
*Որ լավ լինի, գեղեցիկ, այս տարի.*
*Լյալեչկան, թե՝ աղջիկ եմ, գործ չունեմ,*
*Համ էլ այստեղ ես ազատ թռչուն եմ:*

յում հանդես կգան նոր տիպի ջերմաէլեկտրագեներատորներ, որոնք կօգտագործեն նաև դոմնային ու մարտենյան վառարաններից դուրս եկող ջերմությունը, որն այժմ իզուր կորչում է... Այդ ժամանակ մեր արդյունաբերության և կենցաղային նպատակների համար մեծ քանակությամբ ծրի էներգիա կստացվի։ Հիանալի է նաև ակադեմիկ Ա. Ֆ. Իոֆֆեի աշխատանքը ջերմաէլեմենտները բնակելի տների ջեռուցման սիստեմում օգտագործելու ուղղությամբ։ Դա մեծ առավելություններ ունի և, բացի այդ, ծրի էներգիա կմատակարարի բնակիչներին։ Իսկ ամռանը, կիզիչ շոգին, էլեկտրական հոսանքով սնվող ջերմային մարտկոցները սենյակներից դուրս կվանեն տաքությունը և կստեղծեն հաճելի զովություն։

Սա ամենևին էլ ֆանտաստիկա չէ։

### Ռադիոկայանը գրպանում

Կիսահաղորդիչները տեխնիկական առաջադիմության հզոր միջոց են, որն ինչ-որ բանով հիշեցնում է կախարդական գավազանին, որի մասին երազել են շատ վաղուց։

Շատ բնագավառներում կիսահաղորդիչների երևալը նշանավորվում է վիթխարի հեղաշրջումներով։ Ապշեցուցիչ փոփոխություններ են կատարվում ռադիոտեխնիկայի ասպարեզում։ Ավագ սերնդի մարդիկ հիշում են դետեկտորով հափշտակվելու տարիները. դա հասարակ ռադիոընդունիչ է բաղկացած բնական կիսահաղորդիչների բյուրեղների զոդվածքներից, շարժական զսպանակներից և ականջակալներից։ Համբերության դեպքում հաջողվում էր գտնել մի «երջանիկ» կետ և լսել երաժշտություն կամ մարդկային խոսք։ Բայց երբ ինժեներները ստեղծեցին էլեկտրոնային լամպեր, բյուրեղային դետեկտորն առանց ափսոսալու գցեցին արխիվ, կար-



*Ռադիոլամպին փոխարինող տրանզիստորի մեծությունը լուցկու համեմատությամբ։*






*Ամառն անցավ՝ սա ձեռքը գիրք չառավ,*
*Թերթն էլ միայն սաղավարտ դուրս եկավ։*
*Դպրոցում էլ, ժաննետա, մի բան չես.*
*Ամբողջ տարին կարդացիր գիրք ու կես։*



*Մի հերոս էլ Բենոն է մկանոտ,*
*Հենց մի գլուխ շարժում է ձեռ ու ոտ.*
*Դուք կարծում եք՝ մարզա՞նք է նա անում,*
*Ո՛չ, փոքրերին խփում է ու գնում։*

Տեքստը՝ Վ. ՏԱԼՅԱՆԻ
Նկարները՝ ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ծելով, որ առհավետ այնտեղ էլ մնալու է:

Սակայն պատպանի ռադիոսիրողները գիտեն, թե ինչ է նշանակում էլեկտրոնային լամպը ռադիոընդունիչում: Առանց լամպի նա լուռ ու մունջ է: Այդպիսի լամպը բարդ կառուցվածք ունի, չի սիրում հարվածներ ու ցնցումներ, գործածության ժամկետը սահմանափակ է և հանկարծ կարող է վառվել ու դուրս գալ շարքից: Այդ բոլորից բացի լամպը շատ տեղ է զբաղեցնում: Ճիշտ է ասված, որ ինչքան բարդ է կոնստրուկցիան, այնքան կարճատև է նրա կյանքը. սա վերաբերում է նաև էլեկտրոնային լամպին: Բայց չէ՞ որ մեր օրերում էլեկտրոնային լամպերը աշխատում են ոչ թե միայնակ կամ զույգերով, այլ մեծ խմբերով, տասնյակներով ու հարյուրներով, իսկ հաշվիչ մեքենաներում՝ տասնյակ հազարներով: Այդպիսի մեկ մեքենան երբեմն զբաղեցնում է բազմաթիվ հարկեր ունեցող մի ամբողջ շենք: Երբ փչանում է լամպերից մեկն ու մեկը, ամբողջ մեքենան լռում է: Այժմ հասկանալի է, որ էլեկտրոնային լամպերը այդպիսի մեքենաներում ապագա ունենալ չեն կարող: Իսկ ո՞րն է ելքը: Վերադառնալ բյուրեղային դետեկտորին, որն անիրավացի կերպով մոռացության է տրված: Իհարկե, ոչ թե այնպիսիներին, ինչպես եղել են հնում, այլ նոր, կատարելագործված դետեկտորին: Հենց կիսահաղորդիչներն էլ էլեկտրոնագիտության մեջ կատարելու են այդ արմատական հեղաշրջումը և նրա պատմության մեջ բացելու են նոր էջ:

Մեր աչքի առջև դրված է բոլորիս ծանոթ հին ռադիոլամպը, իսկ նրա կողքին՝ լուցկու հատիկի հաստությամբ, բայց ավելի երկար մի ձողիկ, որը մեջտեղում ագույց ունի: Դրա ներսում գտնվում է լուցկու գլխիկի մեծություն ունեցող կիսահաղորդիչի բյուրեղը: Այդ փոքրիկ առարկան, ինչպես նաև կիսահաղորդիչային ռադիոսարքավորումների յուրաքանչյուր ներկայացուցիչ, որոնք կոչվում են տրանզիստորներ, բոլոր ցուցանիշներով գերազանցում են նախորդներին:

Երբ համեմատելու լինենք օգտակար գործողության գործակիցը, ապա ռադիոլամպերինը կստացվի մեկ տոկոսից էլ պակաս, իսկ տրանզիստորներինը՝ հիսուն: Կիսահաղորդիչային ռադիոսարքավորումները ծավալով փոքր են, թեթև, ամուր և դիմացկուն: Տրանզիստորը ասես թե արթնացրեց կոնստրուկտորներին և մղեց նոր խիզախումների, բարեբար ներգործություն ունեցավ բոլոր ռադիոսխեմաների չափսերի վրա: Ռադիոընդունիչը, եթե կարելի է այսպես արտահայտել, սեղմվեց, նրան տեղավորեցին ձեռքի սովորական «Պոբեդա» ժամացույցի կաղապարի մեջ: Ռադիոհաղորդիչը, որը տեղեկություն է տալիս ամբողջ աշխարհին, նույնպես փոքրացել է տեղավորվելով ծխախոտի տուփի մեջ... Հապա փոքրիկ ճամպրուկի մեջ տեղավորված էլեկտրոնային հաշվիչ մեքենանե՞րը, մագնիսական ժապավենի վրա ձայնագրող գրպանի մագնիտաֆոնե՞րը՝ հազիվ տեսանելի միկրոֆոնի հետ, կատարելագործված մեծ էկրանով հեռուստատեսնե՞րը, հազարավոր կիլոմետրերի վրա գտնվող խոսակցի դեմքը ցույց տվող լինզե հեռախոսնե՞րը...

Այս բոլորն արդեն ֆանտաստիկա չէ, այլ իրականություն:



# ԾՈՒՅԼ ՏՂԱՆ ՈՒ ժամացույցը



Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Ա՛յ ժամացույց, ինչքան վատն ես,
Ոչ հոգնել, ոչ քնել գիտես.
Զրնգում ես, հա՛ զրնգում,
Արթնացնում ես խորունկ քնից.
Իսկ մայրիկն էլ քեզ է նայում,
Ու ինձ հանում տաք անկողնից:
Ի՞նչ կլինի, մի քիչ լռես,
Անուշ քունս չխանգարես:
Ժամացույցը խիստ բարկացած

Լեզու առավ, խոսեց հանկարծ.
— Ի՞նչ է, աչքի քո՞ւն ես մտել,
Թե՞ հավի պես թուխս ես նստել:
Հերիք ձգվես, շուռումուռ գաս,
Անկողնու մեջ անվերջ լող տաս.
Թե լողորդ ես, լող տուր գետում,
Մարզանք արա մաքուր օդում:
Վե՛ր կաց դե շուտ, ա՛յ ալարկոտ,
Ամո՛թ է քեզ, հազա՛ր ամոթ...

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՏԱՌԸ ՀԱՐՑ

Խաղի կազմակերպիչը թելադրում է մասնակիցներին հետևյալ տասը հարցերը. 1. Պետության անուն, 2. Քաղաքի անուն, 3. Ծովի անուն, 4. Լճի անուն, 5. Գետի անուն, 6. Աշխարհագետ ճանապարհորդի ազգանուն, 7. Գրողի կամ բանաստեղծի ազգանուն, 8. Կոմպոզիտորի ազգանուն, 9. Նկարչի կամ քանդակագործի ազգանուն, 10. Գրական ստեղծագործության անուն:

Հարցերի թելադրումից անմիջապես հետո, կազմակերպիչը ընտրում է ցանկացած տառը, իսկ մասնակիցները գրում են թելադրված հարցերի դիմաց ընտրված տառով պատասխանները:

Օրինակ՝ ընտրված է «Բ» տառը: Ահա նրա պատասխաններից մեկը. 1. Բուլղարիա, 2. Բրեստ, 3. Բալթիկ, 4. Բայկալ, 5. Բուգ, 6. Բերինգ, 7. Բարտո, 8. Բեթհովեն, 9. Բաշինջաղյան, 10. «Բոռ»:

Խաղը շահում է նա, ով պատասխանում է հարցերին ավելի շատ, շուտ և ճիշտ:

Ինչպես հարցերը, այնպես էլ նրանց քանակը միշտ կարելի է փոփոխել:

## ՓՈՐՁԵՑԵՔ ԴԱՐՁՆԵԼ ՀԻՆԳ ԶՈՒՅԳ

Վերցրեք լուցկու 10 հատիկ և դասավորեցեք այնպես, ինչպես ցույց է տրված նկարում: Ապա փորձեցեք դրանք դարձնել 5 զույգ:

Այդ պետք է կատարել հետևյալ կերպ: Վերցնել ցանկացած հատը, հաշվել նրանցից երկու հատ և դնել երրորդի վրա (օրինակ՝ առաջինը չորրորդի վրա): Միմյանց վրա դրված լուցկու հատերը երկու հատ են հաշվվում:




## ԳՏԵՔ ԱՇՈՏԻ ՍԽԱԼՆԵՐԸ

Ահա, թե ինչպիսի դեպք պատահեց ջոկատում: Պիոներները պատրաստվում էին քաղաքից դուրս զբոսանք կատարել: Ջոկատավարը մեկնեց կոլտնտեսություն և տեղում գծագրեց գյուղի շրջակայքի տեղագրային պլանը: Զբոսանքի համար տեղը շատ հարմար էր:

Քաղաք վերադառնալուց անմիջապես հետո ջոկատավարը հավաքեց օղակավարներին և առաջարկեց, որ տեղագրային պլանի վրա նրանցից




որևէ մեկը նշի կատարվելիք զբոսանքի մարշրուտը: Այդ գործն իր վրա վերցրեց Աշոտը: Նա հայտնեց, որ տեղագրությունը գիտի «ինչպես իր հինգ մատները» և խոստացավ, որ հաջորդ օրը կբերի տեղագրային պլանը՝ նշված մարշրուտով:

Հաջորդ օրը Աշոտը իսկապես բերեց պլանը, որի վրա նա նշել էր, թե պիոներները որտեղ կարող են լողանալ, որտեղ՝ սունկ հավաքել, որտեղ՝ հանգստանալ, որտեղ՝ ֆուտբոլ խաղալ և այլն:

Ջոկատավարը տեսնելով տեղագրային պլանի վրա նշանները, ծիծաղեց: Նա հասկացավ, որ Աշոտը տեղագրություն չի իմանում:

Իհարկե, դուք Աշոտի նման չեք և անմիջապես կտեսնեք, թե նա ինչ սխալներ է թույլ տվել:

1 2 3 4 5 6 7 8 9: Այս թվերի հերթականությունը չփոփոխելով բաժանեցեք չորս խմբի:

Ապա փորձեցեք այդ խմբերի միջև երկու հանման և մեկ գումարման նշաններ տեղադրել այնպես, որ թվաբանական պարզ գործողություններ կատարելով պատասխանը լինի՝ 100:

## ՆԵՐԿԵՑԵՔ ՀԻՆԳ ԳՈՒՅՆՈՎ

Այս 25 վանդակները ներկեցեք կարմիր, կապույտ, կանաչ, դարչնագույն և դեղին գույներով, այնպես, որ հորիզոնական, ուղղահայաց, ինչպես նաև անկյունագծային ուղղություններում գույները չկրկնվեն:

Լուծման եղանակը գտնելուց հետո, կարող եք այս առաջարկը դարձնել սեղանի խաղ: Դրա համար հարկավոր է ֆաներից կամ ստվարաթղթից պատրաստել ցանկացած մեծության 25 հավասար



քառակուսիներ և այդ քառակուսիները ներկել հինգ տարբեր գույներով (յուրաքանչյուր գույնով պետք է ներկել հինգ քառակուսի): Պատրաստելուց հետո առաջարկեք ձեր ընկերոջը այդ քառակուսիները դասավորել միմյանց տակ՝ հինգ շարքով (ամեն շարքում հինգ քառակուսի) այնպես, որ հորիզոնական, ուղղահայաց, ինչպես նաև անկյունագծային ուղղություններում քառակուսիների գույները չկրկնվեն: Սեղանի այս խաղը կարող եք պատրաստել նաև 16 և 49 քառակուսիներով:





Լուցկու հատիկը կոտրեք այնպես, որ երկու մասերը իրարից չանջատվեն և այդ վիճակում դրեք լայն բերան ունեցող շշի վրա: Լուցկու ջարդված հատիկի վրա դրեք մետաղե դրամ: Ձեռք չտալով ո՛չ դրամին և ոչ էլ լուցկուն, դրամը գցեք շշի մեջ:



Դրա համար անհրաժեշտ է մի կաթիլ ջուր կաթեցնել լուցկու ջարդված մասին:

Լուցկու հյուսվածքները ջրից ուռչելուց ձեռք են բերում ճկունություն: Լուցկին լայնանում է, և դրամը մնալով առանց հենարանի՝ ընկնում է շշի մեջ:

*Կազմեց՝ Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

## ՉՈՐ ՎԻՃԱԿՈՒՄ

Մետաղե դրամը գցեք հարթ հատակ ունեցող ափսեի մեջ և լցրեք այնքան ջուր, որ ծածկվի: Հետո ձեր ընկերոջը առաջարկեք առանց ձեռքը թրջելու ափսեից վերցնել դրամը:

Առաջին հայացքից անիրագործելի թվացող խնդիրը կարելի է վճռել բաժակի և այրվող թղթի օգնությամբ:

Վառելով թղթի մի փոքրիկ կտոր, այն իջեցրեք բաժակի մեջ և արագ կերպով բաժակը շուռ տված դրեք ափսեի մեջ՝ դրամի մոտ:



Ջուրն ամբողջությամբ կծծվի բաժակի մեջ, որից հետո դրամը կարելի է վերցնել՝ չթրջելով ձեռքը:

Ջուրը բաժակի մեջ է ծծվում մթնոլորտային ճնշման պատճառով: Այրվող թուղթը տաքացնում է բաժակում եղած օդը, որի հետևանքով նոսրացած օդի մի մասը դուրս է գալիս այնտեղից: Թուղթը հանգչելուց հետո, բաժակի մեջ մնացած օդը նորից սառչում է և ճնշումը փոքրանում: Դրա շնորհիվ էլ ափսեի միջի ջուրը մթնոլորտային ճնշման ազդեցությամբ լցվում է բաժակի մեջ:

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Այն ի՞նչ ծառ է սովորական,
Որ չի ծաղկում ոչ մի գարնան,
Մենք սիրում ենք պտուղն ուտել,
Իսկ տերևը դառնում է թել:

Այն ի՞նչ մայր է՝ զավակներին
Միշտ ջերմություն, լույս է տալիս,
Երբ որ մայրը քուն է մտնում,
Զավակները դուրս են գալիս:

*Մ. ԿՈՐՅՈՒՆ*

Սիրտս բաց արա,
Աչքդ բաց արա:

Թանաքդ լնանա,
Քեզ պետք կգա նա:

Մորուք ունի, պապիկ չէ,
Խլշտան է, կապիկ չէ:

Վաղուց չկամ ես աշխարհում,
Հսկա էի հին դարերում,
Բայց թողել եմ իմ հետնորդը,
Քսան փութ է նրա մորթը:

*Գ. ՔՈՉԱՐՅԱՆ*

## ԱՌԱԾՆԵՐ

Թե անկեղծ ես, նախ քեզ դատիր,
Նոր ուրիշին քննադատիր:

Ծույլը կարդալ չի փորձում,
Գիրը գերան է կարծում:

Միրգն անուշ է միրգ ուտողին,
Գիրքը՝ գրքի ընթերցողին:

Գործը խոսքով չեն դատում,
Գործը գործն է հաստատում:

Պարծենկոտի տակը փուտ է,
Ինչ որ ասի, կեսը սուտ է:

Ստախոսը ուզեց խոսի.
Դեռ խոսք չասած՝ սուտ է, ասին:

*Ա. ՇԻՐՈՅԱՆ*

# ՇԱԽՄԱՏԻ ԿՈՆԿՈՒՐՍ

ԽՆԴԻՐ № 5



*Մատ երկու քայլից*

ԽՆԴԻՐ № 6



*Սպիտակները հետ են վերցնում իրենց վերջին քայլը և մեկ քայլից մատ են հայտնում։*

ԽՆԴԻՐ № 7



*Մատ երեք քայլից*

ԽՆԴԻՐ № 8



*Մատ երեք քայլից*

ԷՏՅՈՒԴ № 3



*Սկսում են սպիտակները, խաղն ավարտվում է ոչ ոքի։*

ԷՏՅՈՒԴ № 4



*Սկսում են սպիտակները և հաղթում են։*

Ժամանակի տարբերությունը Երևանի և մյուս քաղաքների միջև




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

*Չորրորդ էջի լուսանկարը՝ Ս. ԽՈՍՐՈԵՎԻ*



Ձեռագրերը չեն վերադարձվում


**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 02805։ Պատվեր 587։ Տիրաժ 4500։ Տպագրական 4,1 մ.։ Ստորագրված է տպագրության 10/VII 1956 թ.։ Գինը 2 ռ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության*

*№ 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

